

# 1978

Ավարտվեց 1977-ը, և 1978-ը մտավ իր իրավունքների մեջ:

Անցած՝ 1977 թիվը նշանավորվեց անթիվ-անհամար մեծագործություններով, որ կատարվեցին մեր կյանքի բոլոր բնագավառներում, ձեր հայրերի ու մայրերի, ավագ եղբայրների ու քույրերի համառ, քրտնաջան, անձնվեր աշխատանքով:

Ամենանշանակալից իրադարձությունը, որը տեղի ունեցավ 1977 թվին՝ ՍՍՀՄ նոր սահմանադրության համաժողովրդական քննարկումն էր և հաստատումը՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից:

Նույնքան նշանակալից իրադարձություն էր Հոկտեմբերյան մեծ հեղափոխության 60-ամյա տարեդարձի տոնակատարությունը, որը վերածվեց համաժողովրդական ցնծության մեր լայնածավալ երկրում, և մեր ուրախությունը մեզ հետ բաժանեց ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը, Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը մեր երկրում իրավամբ համարելով նոր դարագլխի սկիզբ մարդկության համար, աշխարհի վրա բացված նոր առավոտ:



Թե ինչ է բերելու 1978 թիվը մեր երկրի աշխատավորների և մեզանից յուրաքանչյուրի համար, նշված են մեր կուսակցության և կառավարության նախագծումների մեջ, արտացոլված են 10-րդ հնգամյա պլանում: Անկասկած հաջողությամբ կիրագործեն նաև դրանք ձեր ժրաջան հայրերն ու մայրերը, ավագ եղբայրներն ու քույրերը: Շնորհավորենք նրանց Նոր տարին: Խոստանանք նրանց անելու մեզանից պահանջվողը՝ հասնելու ավելի մեծ հաջողության ուսման մեջ, պիոներական ու հասարակական բոլոր աշխատանքներում հանդես բերել ավելի մեծ ակտիվություն ու նախաձեռնություն:

Շնորհավո՛ր ձեր Նոր տարին, սիրելի՛ ընթերցողներ...

Թո՛ղ 1978-ը ձեզանից յուրաքանչյուրի համար նույնպես անօրինակ հաջողությունների, ներշնչանքի, ուրախության, երջանկության, բարձր թռիչքների ու երազանքների տարի լինի:

## Ներկայանում եմ՝ ՇԵՐԱՆԻԿ

Գիտե՞ք որտեղից եմ գալիս՝
Մագաղաթյա մի մատյանից,
Այնտեղ վարպետ գրիչները
Անմահացրել են նաև ինձ:

«Միծեռնակը» պեղե՛ց, պեղե՛ց
Հին մատյանը ու գտավ ինձ,
Ասաց.— Մեզ մո՛տ եկ, Շերանի՛կ,
Ու պատմի՛ր քո արկածներից:

Ի՞նչ խոսք, որ շատ ուրախացա,
Նրանք ինձ մի նոր կյանք տվին,
Ես էլ աշխույժ արկածներով
Զվարճացրի փոքրիկներին:

Հասակ առել, մեծացել եմ
«Ծիծեռնակ»-ի էջերում ես,
Տեսե՛ք, դարձել եմ պիոներ,
Ալ փողկապ եմ կրում ձեզ պես:

Անշուշտ, դուք էլ ուրախ եք, չէ՞,
Որ ընկերն եմ ես ձեր դառնում,
Արկածներիս այսուհետև
Կհանդիպեք «Պիոներ»-ում:









Նկ. ՆԻԿՈԼԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



# ԿԱԽԱՐԴ ԾԵՐՈՒՆԻՆ

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

Բարի կախարդ էր սափորում ննջում,
Ծուրջը նեղվածք էր ու խորունկ թախիծ,
Բայց մի աղոթք է քամին շշնջում,
Եվ դուրս է գալիս նա նեղ սափորից:

Ծոյում է երկար մորուքը ամպե՝
Կանգնած արևի կարմիր կածանին,
Ու շշուկների փաթիլների մեջ
Թաքնված գույներ կան ծիածանի:

— Հե՜յ, բարի՜ կախարդ, եղնիկներին
Այս գիշեր վառվող աստղեր ես շաղել,
Իսկ ծերուկ Սարից մեր եղբայր քամին
Զյունե գդակդ է թռցրել տարել:

Դե, ոչի՜նչ, մի նոր գդակ կհյուսես
Ու կգաս մեզ մոտ քո կառքին նստած,
Հողմերը հեռվից հենց որ տեսնեն քեզ՝
Մեծ մրցարշավի կելնեն քո դիմաց:

Երեխաները հենց որ տեսնեն քեզ,
— Ձմեռ պապն եկա՜վ,— ուրախ կճչան,
Գիրկդ կթռչեն ձյունանուշիդ պես
Ճերմակ աղջիկներ՝ կարապի նման:

Ծերունիները հենց որ տեսնեն քեզ,
Դեմքիդ կնայեն զարմանքով թաքուն.
— Սա ամեն տարի առույգ է այսպես,
Մեզնից ճերմակ է, բայց չի ծերանում...


... Եվ առավոտյան կախարդը հոգնած
Գնում, լցվում է իր նեղ սափորը,
Որ ննջի այնտեղ ու մի տարի անց
Նորից գա մեզ հյուր՝ հենց այդ նույն օրը...

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ԱՌԱՋԻ՜Ն ՍԵ՜Ր

Գյուղական մութ ու խաղաղ երեկո էր:

Երիտասարդ ուսուցչուհին տանը միայնակ, սեղանին հակված տետրեր էր ստուգում:

Մեկ էլ լսվեցին ոտնաձայներ:

— Ընկե՛ր Արամյան, բա՜ց արեք,— հնչեցին պատանեկան զվարթ ձայներ և ոգևորված ներս խուժեցին մի խումբ աշակերտ-աշակերտուհիներ:

— Ձյո՜ւնը, առաջին ձյո՜ւնը,— շեմից բացականչեցին խմբովին:— Դուք մեզ խոստացել էիք...

Ուսուցչուհին նրանց հոնքերին ու մազերին նկատեց ջրի փայլփլուն կաթիլներ: Ոգևորությունից թե ցրտից, կարմրած էին: Նրանց ոգևորությունը փոխանցվեց ուսուցչուհուն:

— Ի՜նչ լավ է, որ եկաք...

Նա չէր մոռացել, որ աշակերտներին խոստացել էր առաջին ձյան ժամանակ դուրս գալ, միասին դիմավորելու ձմեռը:

Նա վերարկուն առավ ուսերին և նրանց հետ դուրս ելավ:

Ի՜նչ հիասքանչ տեսարան էր. հանդիսավոր հանդարտությամբ ձյան խոշոր փաթիլները խուռներամ իջնում էին ցած, լույս ու խնդություն ճառագելով:

Ձյունը թառում էր պատանիների մազերին, այտերին, թարթիչներին, հալվում էր, տեղը մեկ ուրիշն էր փայլփլելով գալիս ու թառում, իր փայլը նրանց կրակոտ աչքերի փայլին խառնելով:

Բոլորը պճայլված նայում էին անկուսալ թափվող ձյանը, որի հետ ասես մի ոսկեճերմակ մեղեդի էր իջնում ու տարածվում ճերմակ փաթիլներով, երկինք ու երկիր հյուսում իրար:

— Գնանք դա՜շտ: Այնտեղ տներ չկան, ավելի գեղեցիկ կլինի,— հրճվանքից խեղդվելով ձայնեց Սարգիսը:

Դաշտում, իրոք, ավելի գեղեցիկ էր: Այդ տեսիլքին միանում էր առվակի կարկաչը, որը միալար երգում-բլբլում էր:

— Կարո՞ղ եք ասել, թե որն է այս երեկոյի հմայքը,— դիմեց ուսուցչուհին երեխաներին:

— Այն, որ իսկական ձմեռ է սկսվում,— ասաց Վարապղատը:

— Այն, որ եկավ առաջին ձյո՜ւնը,—բացականչեց Սարգիսը:

— Ձյուն դեռ շատ կգա, բայց առաջին ձյունն ուրիշ է,— ասաց ուսուցչուհին:

— Ամեն տարի ձյուն է եկել, բայց մենք չենք զգացել առաջին ձյան գեղեցկությունը, այնպես ինչպես այժմ,— ասաց Վռամը:

— Որովհետև մեզ չեն ասել, ինքնե՜րս էլ չենք նկատել,— բացականչեց Նո

— Անկրկնելի է այն ամեն լավը, ինչ առաջինն է,— ասաց ուսուցչուհին,— առաջին անձրև՛ը, առաջին ծաղի՛կը, թռչնակի առաջին ծլվլո՜ցը, առաջին սե՛րը...

ՆՈՒՆԵ ԳՐԻԳՈՐՅԱՆ

# ԼԵՆԿԱՆ

Առաջին անգամ մեր ավանը եկող մարդը կզարմանա, փողոցներում, ավտոմեքենաների ու ավտոբուսների կողքին վրոսնող եղջերու տեսնելով: Բոլոր վարորդները, ճանապարհին եղջերուին տեսնելիս, կանգ են առնում. «Անցի՛ր, Լե՛նկա»: Զբոսայգիներում, ուր հաճախ է մտնում եղջերու Լենկան, մեծ թե փոքր, վազում են նրա մոտ: Լենկան վստահում է մարդկանց, կերը հենց ձեռքներից վերցնում: Եվ այստեղ ոչ մի զարմանալի բան չկա: Նա մարդկանց շրջապատում է մեծացել:

Չորս տարի առաջ նրա մորը սպանել էին որսագողերը: Փոքրիկ ու անօգնական եղջերուին իր մոտ էր վերցրել անտառապահն ու կոչել Լենկա, Այոնուշկա: Լենկան սիրեց անտառապահին, սիրեց մարդկանց: Ձմռանն ավելի ու ավելի հաճախ սկսեց գալ ավան, իսկ հետո եկավ նաև ամռանը: Հիմա նա ապրում է ավանում, բոլորն էլ սիրում են նրան, առավել ևս երեխաները, որոնք միշտ ուրախությամբ խաղում են Լենկայի հետ:



ՄԱՐԻՆԱ ՊՈԴՏԵՍՈՎԱ

*Ռյազանի մարզ, Լեսնոյ ավան*



Նենեցերեն «վաղա»՝ նշանակում է բառ, խոսք, զրույց և ամբողջ պատմություն: Իսկ «վաղակո» փոքրացված՝ բառիկ:

Նենեց երեխաները սիրում են իրենց վաղակո-բառիկները:

Անտոն Պետրովիչ Պիրերկան՝ նենեցների առաջին գիտնականը, շատ հեքիաթներ գիտեր և լավ էլ պատմող էր: Նա շատ է ճամփորդել նենեցական տունդրայում, հավաքել ու գրի է առել նոր վաղակոներ: Երեսնական թվականներին նա Լենինգրադում հրատարակեց նենեցական հեքիաթների երեք գրքույկ, բայց ավարտել աշխատանքը չկարողացավ: 1941 թ. Անտոն Պետրովիչ Պիրերկան կամավոր մեկնեց ռազմաճակատ և զոհվեց Լենինգրադի պաշտպանության մարտերում:

Տպագրում ենք նենեցական մի հեքիաթ, որ գրի է առել Ա. Պ. ՊԻՐԵՐԿԱՆ:

# ՅԱԲՏՈ ԵՂԲԱՅՐՆԵՐԸ

Այս պատահել է շա՜տ վաղուց: Այն ժամանակ, երբ հեքիաթները ճշմարիտ էին: Նենեցական Պիրի ցեղի մարդիկ կարողանում էին փոխակերպվել գայլաձկան, որովհետև գայլաձկները նրանց նախնիներն էին: Նոխոները՝ բևեռաղվեսների ցեղից էին և իհարկե փոխակերպվում էին բևեռաղվեսների: Իսկ յաբտոները սագերի ցեղից էին, կարողանում էին թռչել, ապրել թռչնակերպ:

Այդ ժամանակ տունդրայում ապրում էին յաբտո ցեղի երկու եղբայր: Նրանք եղջերվապահներ էին, երկուսն էլ ուժեղ էին և ճարպիկ: Երբ հետապնդում էին լծկան եղջերուներին, ոչ մեկը մյուսից չէր կարողանում առաջ անցնել: Նետում էին որսապարանը և ոչ մի անգամ չէին վրիպում: Հերթն հասնում էր կացնին, նետում էին կացինը՝ գնում էր երկինք ու չէր վերադառնում: Ինչպե՞ս ստուգեիր, թե որի նետածն ավելի հեռու գնաց: Եվ թռիչքի մեջ, կողք-կողքի շարած բազմաթիվ սահնակների վրայով, ցատկում էին և դարձյալ մեկը մյուսին չէր կարողանում գերազանցել:

— Եղբա՛յր, մեծ տունդրայում տեղը նեղ է երկուսիս համար: Ջրի մեջ նայելիս դու ասես թե իմ արտացոլումը լինես, կամ ես լինեմ քո արտացոլումը,— ասաց փոքրը:

Մեծը ավելացրեց.

— Այսպիսի ավանդություն ունենք մենք, մեզնից ով փոխակերպվի սագի և ողջ տարին ապրի իբրև սագ, ամբողջ տունդրայում նրանից ուժեղը չի լինի: Գուցե փորձենք:

Մյուսը պատասխանեց.

— Դու իմ մեծ եղբայրն ես, որոշեցիր, ես քեզ հակառակ չեմ գնա:

Ահա հողի ձմեռային հագուստը շատ տեղերում պատռվում է, կրծմրծվում, ինչպես բոռերն են գարնանը կրծմրծում եղջերվի մաշկը: Այդ ժամանակ եղբայրները սագերի լեզուն հասկանում էին:

— Հայրենիք վերադարձանք, հայրենիքում լավ կլինի մեզ համար:

Երկնքում ճռճվում էր սագերի վրանաձև երամը: Այդ ժամանակ մեծ եղբայր Յաբտոն ասաց.

— Ժամանակն է:

Գլուխկոնծի տվին յաբտո եղբայրներն ու սագեր դարձած թևերը թափահարեցին.

— Թռչո՜ւմ ենք...

Եղբայրներին սագերի երամն ընդունեց: Առաջնորդը նրանց առավ երամի մեջտեղը, որպեսզի առջևից գնալիս չանջատվեն, ետևից՝ հետ չմնան:

Գարունը տունդրայում արագընթաց է: Երեկ դեռ թվում էր առաջին առվակները կտրատում են ձյունահյուսքերը: Այսօր լճերի սառցակեղևը ճեղքվում է, հալվում, վաղը լճափերը ծածկվում են մատղաշ կանաչով, ասես թերթերունքներ են աչքը եզերող:

Սագերի երամը, հեռավոր թռիչքից հյուծված, սկսում է սնվել: Մեծ եղբայր Յաբտոն ամբողջ օրը կտցահարում էր խոտը.

— Մարդ եղած ժամանակ,— ասում է նա,— մենք ինչպե՞ս չգիտեինք փափուկ խոտի քաղցրությունը:

Կանաչ ջրասպը լճի երեսը ծածկել էր: Քամին լինելիս կանաչ ալիքները վազում էին նրանց վրայով: Մեծ եղբայր Յաբտոն ամբողջ օրը կտուցով ջրասպ էր հավաքում:

— Սա եղջերվի ուղեղից համով է,— ասում էր նա:

Փոքր եղբայր Յաբտոն էլ էր ուտում, ուժ հավաքում, բայց ավելի քիչ, զգուշանում էր.

— Եթե մենք, մե՛ծ եղբայր, շատ յուղակալենք, արագ շարժվել չենք կարողանա:

Մեծը նրա վրա միայն թևերն էր թափահարում:

— Հազիվ մի տարի սագեր ենք դարձել, այս համեղ բաները ինչպե՞ս չուտենք:

Եկավ ամառը: Սագերը դարձան ծույլ: Հին բմբուլ ու փետուր թափում են, տեղ են պատրաստում նորի համար: Այդ ժամանակ սագերը թռչել չեն կարողանում, միայն վազում են, թաղանթաթաթերի մեջ է նրանց ամբողջ ուժը: Քնելու ժամանակ առաջնորդը պահակներ նշանակում: Մյուսները քնում են, իսկ պահակը վիզը ձգած նայում է շուրջն ու լսում, թե վտանգ չկա՞ որևէ կողմից: Որպեսզի չքնի, պահակսագը կանգնում է մի ոտքի վրա, երկրորդ ոտքը սեղմում կրծքին: Եթե քնի՝ կընկնի, վեր կթռչի և դարձյալ վիզը կձգի:

Մեծ եղբայր Յաբտոյի պահակ կանգնելու հերթը եկավ: Երամը քնեց: Նրա քունն էլ է տանում,



մտածում է. «Մի քիչ քնեմ, երեկ գիշեր բան չպատահեց, այս գիշեր էլ չի պատահի»:

Պահակը գլուխը խոթեց թևի տակ ու քնեց: Քնած է ամբողջ երամը: Իսկ որսորդներն այդ ժամանակ շրջապատում են երամը: Լճային թեթև նավակները նրանք սահնակներով բերել էին: Կամաց իջեցնում են ջուրը: Նրանց հետի շները նախազգում են որսի մոտիկությունը, բայց առայժմ ծպտուն չեն հանում, որպեսզի ժամանակից շուտ չվախեցնեն նրանց:

Հետապնդումը ղեկավարում է Հսկա Վինուկան: Նենեցական ամբողջ տունդրայում նրանից ուժեղը չկա: Նրա մրցակիցները միայն Յարտո եղբայրներն են: Հսկա Վինուկան վախենում էր, որ երբ եղբայրները մի տարի այրեն իբրև սագեր, ինքը նրանց այլևս հաղթել չկարողանա: Սագ դառնալու առաջին օրվանից նա հետևում էր Յարտո եղբայրներին: Հարմար պահ էր փընտրում, ահա և հասավ այդ պահը:

Շուրջը նայեց Հսկա Վինուկան, ամեն ինչ կարգին էր: Յոթ երկրների բնակիչների նավակները ուռկանի ցանցի պես, ողջ երամին շրջապատել են: Նրանց հետ էլ շները՝ ուռկանի պարանների պես: Ուռկանն հավաքելու տեղում թաքնվել էր ինքը՝ Հսկա Վինուկան իր ընկերների հետ, ափամերձ թփերի մեջ: Նրանց երկար մահակները, սագերի արյան ծարավի, դողում էին նրանց ձեռքերում:

Հսկա Վինուկան,- ահա, թափահարեց մահակը: Մեկեն հաչեցին շները, թիակները հարվածեցին ջրերին, հետապնդողներն աղաղակեցին: Սագերը քնից արթնացան ու ոչինչ չհասկացան: Երեք կողմից այնպիսի աղմուկ էր, որից հոգիդ թաթերովդ ուզում էր դուրս գալ: Չորրորդ կողմն առայժմ լուռ էր: Ամբողջ երամը նետվեց այդ կողմը: Թաթերն այնպես են ջուրը վարում, որ լիճը փոթորկվում է:

Եղբայր Յարտոները կողք-կողքի էին գնում: Նրանք մարդու պես հասկացան, որ հետապընդվում են: Բայց փախչելու տեղ չըկար: Ուռկանը նրանց դեպի սարափեշի ափն էր քաշում:

Փոքր եղբայր Յարտոն մեկ էլ թե.

— Ես այստեղ ստորգետնյա հոսանք տեսա, երբ սուզվեցի: Հոսանքը կարծես թե հարևան լիճն է տանում: Շատ օ՛ղ հավաքիր և սուզվենք:

Եղբայրները սուզվեցին: Լողում են մթության մեջ: Հոսանքին վերջ չկա: Ուժասպառվում են եղբայրները, ներսի օդից ահա-ահա պայթելու են:

Վերջապես առջևում լույս երևաց: Դուրս եկան սագերը հարևան լճի ափը, շնչել չեն կարողանում: Լսում են՝ մոտերքում ավարտվում է հետապնդումը: Նրանց բոլոր ընկերները տապալվել են:

Լավում է նաև Հսկա Վինուկայի ձայնը.

— Յո՞թ երկրների բնակիչներ, այս սագերի միսը տարեք ձե՛զ: Ա՛ղ դրեք: Ամբողջ ձմեռը աղ դըրած միս կուտեք: Ինձ միայն երկո՛ւ սագ տվեք:

Հետո Հսկա Վինուկան դարձյալ խոսեց.

— Չկան նրանք, որոնք պետք են ինձ: Ինչպե՞ս կարողացան ծլկել:

Լսում է, թե ինչպես նա շներին ուղարկում է հանելու փախստականների ետևից:

— Քը՛սս... հասի՛:

— Փախչե՛նք,— ասում է փոքր եղբայր Յարտոն,— մե՛ծ ախպեր, շուտ անենք փախչենք:

Շներից մեկն ընկնում է նրանց հետքի վրա:

Փոքր եղբայրը արագ փախչում է, շներն անգամ ետևից չեն հասնում: Բայց, ահա, մեծը ետ է մընում, շատ էր ճարպակալել: Ուր որ է շներն հասնելու էին ետևից:

Մեծ եղբայր Յարտոն խնդրում է.

— Ախպե՛ր ջան, օգնի՛ր, էլ ուժ չունեմ:

Փոքր եղբայրը կանգնում է, պպասում շանը, ամբողջ ուժով խփում է թևով նրա սև քթին: Շունն ընկնում է, ցնցվում ու ձըգվում, անշարժանում, սատկում է:

Միայն թե փոքր եղբոր թևը

կախված է մնում, կոտրվել է: Ցավում է, սակայն շիկացած ածուխի վրա այրում էին:

Այժմ երկու եղբայր միասին են ապրում: Երբ մեկը քնում է, մյուսը ամբողջ գիշերը մի ոտքի վրա կանգնած հսկում է:

Աշունը եկավ: Բոլոր բադերը պատրաստվեցին չվելու: Միայն փոքր եղբայր Յարտոն չվել չէր կարող, թռչել չէր կարող, միայն լողում էր: Թևը առողջանում էր, բայց շա՜տ դանդաղ:

Բոլոր սագերը շարք կազմեցին, ճանապարհ ընկան դեպի հեռավոր երկրներ, ուր ձմեռներ չեն լինում: Եղբայրները մնացին մենակ: Լճի ջուրն արդեն սառչում էր: Կամաց զնգում էին սառցակտորները՝ «ծը՜նգ-ծը՜նգ»:

Մեծ եղբայրը հիմա հաճախ ասում էր.

— Դու այդ ինչպե՞ս խփեցիր շանը: Ես ավելի շնորհքով կանեի: Քեզ հետ ես էլ կորչելու եմ:

Մի անգամ փոքր եղբայրը արթնացավ, տեսավ մենակ է: Սպասեց եղբորը, ձայն տվեց, եղբայրը չկար, թռել գնացել էր, երևում է, սագերի երամի ետևից:

Ճչաց փոքր եղբայր Յարտոն, ինչքան ուժ ուներ թափահարեց թևերը, ու հենց թռավ, նորից ընկավ ջուրը: Թևը դեռ թույլ էր, չկարողացավ օդում մնալ:

Լճափի սառույցն արդեն կարծրացել էր, մգացել, ձյուն չկար: Թակարդ ընկածի պես, սառել, մնացել էին նրա մեջ հատակից բարձրացած օդի պղպջակները: Միայն մեջտեղում էր կնճռոտվում լճի ջուրը:

Օրը-օրին կրճատվում էր լճի մակերեսը: Փոքր եղբայր Յարտոն կառչում էր նրան, ինչպես կյանքից: Թաթերով սեղմում էր ճըռճռացող սառցաեզրը, կտուցով հարվածում: Թաթերը սառը ցրտից կարմրել էին, ասես եռացրած ջուր էին լցրել վրան, ճաքճքել ու արյունոտվել էին: Առանց դադար առնելու, նա գիշեր ու ցերեկ լողում է, ջուրն ալեկոծվում, չըթողնելով, որ նա ամբողջովին սառցակալի:

Բայց ահա արդեն լճի մեջտեղը միայն փոքրիկ մի տեղ է մընացել չսառած, իսկ և իսկ սագի մարմնի չափ:

Եվ մեկ էլ հանկարծ, այդ ժամանակ, Յարտոն զգաց, որ իր թևը բոլորովին ամրացել է: Թռավ վեր, և նրա բռնած տեղի ջուրը իսկույն սառցակալեց այնպես, որ ասես սառած էլ եղել էր:

Թռավ կրտսեր Յարտոն հարավ: Նրա ետևից բարձրացավ հյուսիսային քամին և քշեց նրան՝ տարավ: Մեկ օրում նա թռավ կտրեց այնքան ճանապարհ, որքան երամը երկու մեկ շաբաթում չկտրեր: Երկրորդ օրը նույնպես հյուսիսային քամին նրան քշեց տարավ: Երրորդ օրը անտառի եզրին քամին դադարեց: Նայեց կրտսեր Յարտոն ցած, տեսավ փոքրիկ ձյունաթումբ, որից սագի վզի պես բան էր կախված, իջավ կրտսեր Յարտոն և ի՜նչ. տեսավ իր առջև սառած մի սագ, ճանաչեց Յարտոն.

— Իմ մեծ եղբայրն է... Դու ինձանից այնքան էլ հեռու չես թռչել...

Է՛, ի՜նչ երկարացնենք:

Նոր գարուն եկավ: Տունդրա վերադարձան սագերի երամները: Ամենից առաջ կրտսեր Յարտոն թռավ եկավ: Սավառնեց հայրենի քոչվորատեղիների վերևում ու ցած իջավ: Պտտվեց գլխի վրա, մարդ դարձած կանգնեց ոտքի:

Կրտսեր Յարտոն մտավ իր չումը (խրճիթը), պառկեց անկողնու վրա: Հսկաների օրենքի համաձայն ամբողջ երեք ամիս նա քուն մտավ: Երեք ամիս անց արթնացավ: Ամառվա եռուն շըրջանն էր:

Կրտսեր Յարտոն եղջերուներին բռնեց, լծեց սահնակը և գընաց: Յոթ օր նա քշում էր եղջերուներին: Նրա սահնակի հետքը երկարում էր ու երկարում: Ահա լեռնաշղթայի կատարին տեսավ մեծ քոչվորատեղի, խմբված հարյուրի չափ չում, անհաշիվ եղջերուներ:

Կրտսեր Յարտոն մոտեցավ ամենամեծ չումին, եղջերուների սանձերը նետեց և ասաց.

— Հսկա՛ Վինուկա, ինչի՞ ես սպասում, դո՛ւրս եկ դիմավորիր:

Հսկա Վինուկան դուրս եկավ չումից, ասաց.

— Երկու Յարտոների փոքր եղբա՛յր, դու հավանաբար եկել ես ինձ սպանելու: Եթե կարող ես՝ սպանի՛ր: Բայց նախ ե՛կ մեր ուժերը չափենք:

Հսկա Վինուկայի ուժը շատ էր մեծ: Աջ ձեռքով որ թափահարեց իր եղջերվամուշտակը, ամառ օրով ողջ տունդրան ծածկվեց ձյունով, լճերը սառան, գետերը կանգ առան: Խոր ձմեռ եղավ: Միայն լեռնաշղթայի գագաթից երևում էր, որ լճերից մեկի մեջտեղ ջուրը մի սագաչափ չէր սառել: Հսկա Վինուկան ինչքան չարչարվեց, չկարողացավ այդ փոքրիկ տեղն էլ սառեցնել, նրա ուժը մի քիչ չհերիքեց:

Հետո կրտսեր Յարտոն իր հերթին թափահարեց իր եղջերվամուշտակը: Եվ տունդրայում նորից ամառը վերադարձավ: Հանկարծահաս ձմռանից բան չըմնաց:

Կրտսեր Յարտոն ասաց.

— Դու իրավացի ես, Հսկա՛ Վինուկա, երևաց, որ ես քեզ կարող եմ սպանել: Բայց մեր երկիրը մեծ է: Երկու հսկայի համար նեղվածք չի լինի: Դատարկ մրցակցության պատճառով ես արդեն եղբորս կորցրի: Արի՛ միասին ապրենք մեր հողում և պաշտպանենք թշնամիներից, եթե նրանք գան:

Եվ վերջ:



Նկ. ՆԻԿՈԼԱՅ ԺՈՒԿՈՎԻ

# ԱՆԱԿԸՆ-ԿԱԼ ՀԱՆԴԻ-ՊՈՒՄ



ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ

Բարձրագնա կեչուն մոտիկ,
Ծանր նստած այրապարկին՝
Մի գյուղացի ոտաբոբիկ,
Մխում է ու նայում չորս դին:

Մոտեցավ մեկն արագ-արագ.
— Բարև՜, ընկե՛ր,— ջերմ ողջունեց,
Մի փոքրիկ կոճղ դրեց իր տակ
Ու դեմառդեմ հանգիստ նստեց:

Վեր բարձրացրեց մռայլ դեմքը
Մեր գյուղացին՝ ստարոստի,
Այրոտ ձեռքով սեղմեց ձեռքը.
— Բարև՛,— ասաց, ծխեց էլի:—

Բերյոզկայից եմ Միրձմոսկովյան,
Հողն էլ, եղբա՛յր, մերն է հիմի,
Բայց այս տարի երաշտ եղավ,
Վախենում ենք, որ սով լինի:

Անչափ լուրջ է գյուղի բանը
Դե, կռիվ էր... վատ ենք ապրում,
Մի կտոր հաց չկա տանը,
Քաղաքից եմ ալյուր տանում...

Աշնանացան սերմ էլ չունենք՝
Ցիլա-չփոր արինք, կերանք.
Եկող տարի ինչպե՞ս կապրենք,
Երբ հողը մնա անցանք...

Որպես կարմիր գվարդիական՝
Եկա տեսնեմ ես Լենինին,
Ինքս ինձ ասի՝ գնա՛, Իվա՛ն,
Խնդրի՛ր նրան՝ օգնի գյուղին...

Բայց Լենինին որտե՞ղ գտնեմ.
Նա գործ ունի աշխարհի չափ,
Ո՞վ կթողնի պալատ մտնեմ
Այսպես բոբիկ ու անգդակ...

— Ընկե՛ր Իվան,— մարդն է ասում,—
Շատ չեք մնա բոբիկ, աղքատ՝
Կանցնի այդ էլ... ձեռքդ ի՛նձ տուր,
Ես Լենինն եմ, ծանոթանանք:—

Ծիծաղում է Իվանը մեր,
Նստած տեղից ուրքի ցատկում,
Այրոտ ձեռքով՝ հաղթ, անեբեր,
Նրա մեջքին ամուր զարկում.



# ԷՋԵՐ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

Արևելյան Հայաստանում իշխում էին պարսիկ խաները ու բեկերը: Հայերը ամենուր զրկված էին իրավունքներից: Նրանց չէր թույլատրվում ձի նստել, զենք կրել, գեղեցիկ հագնվել: Երևանի խանությունում ապրող հայերը մոտ 40 տեսակի հարկ ու տուրք էին տալիս: Բնակչության քրտինքով ստեղծված բարիքները սարբազները հափշտակում և կուտակում էին Երևանի կենտրոնում վեր խոյացող սարդարի պալատում: Անկախությունը կորցրած, բազմաթիվ բռնագաղթեր ու կոտորածներ տեսած հայ ժողովուրդը ի վիճակի չէր սեփական ուժերով ազատվել պարսկական լծից: Միակ հզոր երկիրը, որ կարող էր օգնության ձեռք մեկնել՝ Ռուսաստանն էր: Հայերը դա հասկանում էին և շատ անգամ էին դիմել Ռուսաստանին, օգնություն խնդրելով: Ռուս առաջադեմ մարդիկ՝ գրողները, գիտնականները, հեղափոխական գործիչները նույնպես ցարական կառավարությունից պահանջում էին օգնել հայ ժողովրդին:

Պարսկական շահը որոշեց մեկընդմիշտ վերջ տալ հայերի ազատագրական ձգտումներին, ետ գրավել Ռուսաստանին միացած Վրաստանն ու Ադրբեջանը և ամբողջ Անդրկովկասում հաստատել Պարսկաստանի տիրապետություն: 1826 թ. ամռանը Աբաս Միրզայի 60-հազարանոց բանակը ներխուժեց Անդրկովկաս: Սկսվեց մի պատերազմ, որ հայտնի է ռուս-պարսկական պատերազմ անունով, որը ազատություն պետք է բերեր հայ ժողովրդին:





— Պա՛հ, քո տունը չքանդվի,
Հանարքչի ես, ախպե՛ր, եղել:
Խելքիդ փչեց էդ ի՞նչ քամի,
Որ ուզում ես Լենին լինել:



Չէ՛, ախպերս, ինձ չե՛ս խաբի...
Լավ է՝ պարկը շալա՛կս տուր,
Գնամ, մինչև օրը մթնի,
Ոտքով հազիվ հասնեմ մեր տուն:



— Սիրո՛վ, սիրո՛վ, ընկե՛ր Իվան,—
Ասաց մարդը ծիծաղելով:
Ու կռացավ, օգնեց նրան,—
Լավ կլինի... գնանք բարո՛վ:



— Մնաք բարո՛վ,— մեր գյուղացին
Քրթմնջալով ասաց, գնաց:
Իսկ Լենինի լայն թիկունքին
Ալրոտ թաթի հետքը մնաց:







## ՇՈՒՇԻ ՔԱՂԱՔԻ ՀԵՐՈՍԱԿԱՆ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Պարսկական զորքի առաջին հարվածն իրենց վրա առան ղարաբաղցիները: Ամրանալով Շուշիի բերդում, նրանք ռուսական փոքրիկ կայազորի հետ երդվեցին կռվել մինչև վերջին մարդը: Բերդի վիճակը անմխիթար էր, շատ տեղերում պատերը փլված էին և ճեղքված: Ամրոցի պաշտպանները, արհամարհելով մահը, հակառակորդի կրակի տակ վերանորոգում էին ամրոցը: Հուլիս ամիսն էր, գյուղացիները դեռ չէին հասցրել հավաքել ցորենի բերքը: Պաշարվածները սննդի կարիք էին զգում: Նրանք ստիպված էին գիշերները դուրս գալ ամրոցից՝ դաշտերից ցորեն հավաքել, աղալ ջրաղացում, ապա պարկերը չալմաներին՝ ժայռերն ի վեր մագլցելով հասցնել ամրոց: Աբաս Միրզան կատաղությունից իրեն ուտում էր: Անգլիայում պատրաստված 30 որակյալ հրանոթները շարունակ կրակի տակ էին պահում Շուշին: Բերդի պաշտպանները դրան պատասխանում էին իրենց ունեցած 4 հրանոթով և ետ էին մղում հակառակորդի մեկը մյուսին հաջորդող գրոհները: Հայ արհեստավորները օր ու գիշեր աշխատում էին և անհրաժեշտ քանակությամբ վառոդ պատրաստում բերդի քաջ պաշտպանների համար:

Շուշի քաղաքի հերոսական պաշտպանությունը տևեց 47 օր և խոշոր նշանակություն ունեցավ պատերազմի հետագա ընթացքի վրա: Անդրկովկասում ցրված ռուսական զորամասերը ժամանակ ունեցան համախմբվելու և շուտով գրոհի անցան պարսկական բանակի դեմ:

# ՀԱՅ ԵՐԻՏԱՍԱՐԴԻ ԱՆՕՐԻՆԱԿ ՍԽՐԱՆՔԸ



Ռուսական կանոնավոր բանակին շատ էին օգնում հայ կամավորները: Նրանք հաճախ էին առնում վտանգավոր և դժվարին առաջադրանքներ: 1827 թ. ապրիլին գեներալ Կ. Բենկենդորֆը իր զորամասով մտավ Երևանի խանության սահմանները: Անհրաժեշտ էր շտապ և շատ կարևոր լուր հասցնել Էջմիածին: Իսկ ճանապարհը պարսիկների ձեռքին էր: Այդ դժվարին առաջադրանքը հանձն առավ բյուրականցի մի երիտասարդ՝ Հովհաննես Ասլանյանը: Սակայն նա տեղ չհասավ, ընկավ թշնամու ձեռքը: Պարսիկ սարբազները նրան ստիպում էին խոստովանել, թե ի՞նչ հանձնարարությամբ է գնում Էջմիածին, տեղեկություններ հաղորդել ռուսական բանակի մասին: Հովհաննեսը լուռ էր: Կատաղած սարբազները հանում են նրա մեկ աչքը, կտրում քիթը, հետո լեզուն... Հովհաննեսը լուռ դիմանում է բոլոր ցավերին: Պարսիկները թողնում են արնաշաղախ Հովհաննեսին և հեռանում:

Գիշերը Հովհաննեսը ուշքի է գալիս: Շուրջը ոչ ոք չի լինում: Կամքի մեծ լարումով նա հավաքում է վերջին ուժերը և հասնում Էջմիածին: Հովհաննես Ասլանյանը կատարում է իրեն տրված հանձնարարությունը: Անօրինակ սխրանքի համար նա պարգևատրվում է ոսկե մեդալով:



# ՕՇԱԿԱՆԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ

Ռուսական բանակից մի քանի ծանր հարվածներ կրելուց հետո, Պարսկաստանի շահը՝ Աբաս Միրզան որոշեց ժամանակ շահել: Նա առաջարկեց դադարեցնել պատերազմը և հաշտություն կնքել: Աբաս Միրզան ամեն կերպ ձգձգում էր լսկսած բանակցությունները: Համախմբելով ուժերը, նա 30-հազարանոց զորքով հարձակվեց Էջմիածնի վրա: Էջմիածնի ռուսական կայազորը և հայ կամավորները հերոսաբար դիմադրում էին: Ռուս գեներալ Կրասովսկին իր դիվիզիայով շտապեց օգնության: 1827 թ. օգոստոսի 17-ին ռուսական և պարսկական զորքերը հանդիպեցին իրար: Պարսիկները թվով ավելի շատ էին: Մարտերը կատաղի էին: Ռուս և հայ զինվորները վիրավորվելուց հետո էլ չէին հեռանում կռվի դաշտից: Աբաս Միրզան յուրաքանչյուր ռուս և հայ մարտիկի գլխի համար խոստացել էր 5 ոսկի տալ:

Օշականի ճակատամարտում իր անունը փառքով պսակեց հրանոթաձիգ Հակոբ Հարությունյանը: Նա պարսկական բանակի զինվոր էր, և կռվի թեժ պահին, հրանոթի փողը շրջեց պարսիկների դեմ: Չսպասված հարվածից շատ պարսիկներ զոհվեցին, խուճապ սկսվեց նրանց շարքերում: Ուշքի գալով, պարսիկները բռնեցին Հակոբ Հարությունյանին և դաժանորեն խոշտանգեցին: Սակայն հերոսը կենդանի մնաց և ապրեց պարսկական լծից ազատագրված իր հայրենիքում:

Օշականի ճակատամարտը ավարտվեց ռուսների և հայերի հաղթանակով: 1834 թ. Էջմիածնից Օշական տանող ճանապարհի վրա մարտում զոհված ռուս և հայ զինվորների հիշատակին հուշարձան կանգնեցվեց: Հուշարձանը այսօր էլ կանգնած է և խորհրդանշում է ռուս և հայ ժողովուրդների դարավոր բարեկամությունը:

# ՎԵՐՋԻՆ ԳՐՈՀԸ

1827 թ. սեպտեմբերին պարսկական շահի Աքաս Միրզայի բանակն արդեն ջախջախված էր: Կենդանի մնացած պարսիկ սարբազները փախչում էին Հայաստանից: Սակայն Երևանի բերդում ամրացած Հասան խանը դեռևս չէր հաշտվել պարտության մտքի հետ: Սեպտեմբերի 25-ին ռուսական բանակը և հայ կամավորները սկսեցին Երևանի բերդի երրորդ՝ վերջին գրոհը: Զնայած Երևանի վրա կատարած առաջին և երկրորդ արշավանքները ավարտվել էին անհաջողությամբ: Հասան խանը պարծենկոտաբար հայտարարում էր, որ ռուսներին և հայերին երբեք չի հաջողվի գրավել երևանյան բերդը:

Հինգ օր հինգ գիշեր շարունակվեց գրոհը: Ռուս զինվորների կողքին քաջաբար կռվում էին հայ կամավորները, շրջակա գյուղերից եկած հայ գյուղացիները: Գրոհողներին մեծ օգնություն էին ցույց տալիս նաև բերդի ներսում փակված հայերը: Նրանցից մեկին՝ Աստվածատրյանին, պարսիկները կապեցին թնդանոթի փողին և կրակեցին: Բայց նրանց վայրագությունները անգամ ի վիճակի չէին նրանց կանգնեցնել հայ հայրենասերներին: Շուտով ապստամբեցին բերդում եղած բոլոր հայերը: Պարսկական զորքերը վերջնականապես հուսալքվեցին: Մի գիշեր Հասան խանը փորձեց փախչել բերդից, հանդիպելով ռուս զինվորներին՝ ստիպված ետ վերադարձավ: Հոկտեմբերի 1-ին Երևանի բերդի պարըսպի փլվածքների միջով ռուսները մտան Երևան: Պարսիկ սարբազները նետվեցին բերդի հյուսիսային դարպասները, որպեսզի գոնե փախուստով ազատեն գլուխները, բայց այնտեղ նրանց ճանապարհը փակեց գեներալ Կրասովսկու զորամասը: Սարբազներն անձնատուր եղան: Հայերի ուրախությանը չափ ու սահման չկար: Նրանք ազատվել էին պարսկական դարավոր ճորտությունից:

*ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ*



ԵՐԵՎԱՆԻ ԲԵՐԴԸ

# ՁՄՌԱՆ ԳԻՇԵՐ

*ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ*

Ձմուշկները հեզասահ
Սառցադաշտի հայելուն
Ծաղիկներ են գծում նուրբ,
Ե՛վ օղակներ, և՛ ոլունք:

Լուսինն ուզում է փորձել
Արծաթափայլ հայելուն,
Ծաղիկներ ու օղ գծել
Եվ ոլունքներ փայլփլուն:

Բայց սայթաքում է, ընկնում,
Կոտրվում է թասի պես,
Փշուր-փշուր շողշողում
Ծաղիկներին՝ ցողի պես:

Պարզկա գիշեր է ձմռան
Կապույտ դաշտում երկնքի,
Ձմուշկների նման սուր
Եվ փայլերով հակինթի:

Աստղերն օղեր են գծում,
Գծում ոլունք ու ծաղիկ,
Եվ խառնվել են իրար
Արծաթ երկիր ու երկինք:





# ՍԵՐԳԵՅ ԵՍԵՆԻՆ

Եսենինին բնությունը ստեղծել է բացառապես պոեզիայի համար, որպեսզի արտահայտի դաշտերի անսպառ տխրությունը, սեր և գթասրտություն դեպի աշխարհի յուրաքանչյուր կենդանի արարած, որոնցից առավել արժանին մարդն է։

ՄԱՔՍԻՄ ԳՈՐԿԻ





* * *

Անտառը՝ լուռ, դաշտերը՝ մերկ,
Պաղ մշուշ է չոքել ճամփին,
Իր անիվը պտտելով՝
Կապույտ լեռով անցավ արփին։

Ճամփան խորունկ նիրհ է մտել
Ու երազ է տեսնում հիմա.
Մոտենում է գալուստն արդեն
Ակնոր ու ճերմակ ձմռան։

Ա՜խ, երեկ էլ հովտում զնգուն
Ինձ երևաց պատկերը հին.
Լուսինն ասես մի չեկ մտրուկ
Լծվել էր մեր սահնակներին։



* * *

Գունատ լուսինն է խրձերի ետև
Պահվում արևի պայծառ շողերից,
Հեռավոր ծիրում, արտերից դեն
Լուրթ արևելքն է բռնկվում հրից։

Այգն է ցոլցլում, մշուշվում, ինչպես
Կույսի աչքերը խորունկ, անմեկին։
Պանդուխտ գարունը ցուպ ու մախաղով
Եկել է՝ կեչու տերևներ հագին։

Եկել է, մտել պուրակը շաղոտ,
Ծառերից կախել զնգզնգուն գինդեր,
Ու այգին մտած լույսերի խաղով
Թռչում է, դարձած մի սիրուն թիթեռ...





* * *

Այնտեղ, ուր այգը վարդագույն ջրով
Կաղամբի շար-շար մարգերն է ջրում,
Փոքրիկ թխկենին իր դունչը ցցած՝
Հորթուկի նման մոր կաթն է խմում։



* * *

Կանգնել եմ ճամփեզրին,
Հենվել ուռենուն,
Մեղմ իջնում է երեկոն,
Ու ցողն է շողում։

Լուսնի լույսը թափվել է,
Լցվել տուն, կտուր,
Ինչ-որ հեռվում երգում է
Սոխակը տխուր։

Տաք է, վառարանի մոտ
Ձմռանը ինչպես,
Կեչիները շարվել են
Մեծ մոմերի պես։

Հեռու, գետակից այն կողմ,
Անտառի փեշին,
Քնատ պահակն է թակում
Թակիչով իր հին։

*Թարգմ. ՀՐԱՉԻԿ ԹԱՄՐԱԶՅԱՆԻ*




ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

Այդ գյուղում ոչ մի դուռ իր շրջանակին այդպես կիպ չէր հագած: Կաղնե թանձր դուռը կաղնե շրջանակին հայրը տասը-տասներկու տարի առաջ ինչպես հմտորեն հագցրել էր՝ դուռն այդպես էլ կար: Բայց դռան ու շրջանակի միասնական եզրով ցուրտը փշրկուն եղյամ էր դրել և պինդ, ողորկ, գորշ սառույց էր կապել զույգ ծխնու վրա. քիչ հետո, երբ տղան ու հայրը դուրս գալու համար դուռը բացեին՝ զույգ ծխնու սառույցները զգվելի ճռռոցով փշրվելու էին:

Արմիկ Մնացականյան անունով տղան դռան տակ կանգնած սպասում էր հորը: Վառարանը դեռ կրակ ու կերակուր չէր բուրում, վախվորած բոցերը վառարանի դռնից երբեմն ցոլք էին նետում, իսկ լուսամուտների ապակիները սառցակալած էին: Պղտոր, ծոխանքի, շան լափի գույն աղջամուղջում, վառարանի թույլ ցոլքերի դեմ, հայրը մի ոտքը ծընկել ու գզրոցից մեխ էր ջոկում, տնտղում, եթե շատ ծուռ չէին՝ գցում էր կաշվե բաճկոնի գրպանը: Մայրը իրենց անկողինը հավաքում էր և ամեն անգամ նկատում, որ հայրը գրպանը մեխ գցեց: Մոր կարծիքով ափսոս էին և՛ մեխերը, և՛ գրպանը, և մայրն ամեն անգամ ուզում էր դիտողություն անել, թե մերկ մեխերը գրպանը կքրքրեն, բայց չէր անում: Պատերազմից առաջ, երբ տղայի ձեռքը դեռ չէր հասնում պահարանի գզրոցին, հայրն այնտեղ շիտակ շատ մեխ էր ունեցել, բայց հիմա դժվար էր գտնում և կարծում էր չի ունեցել, և Արմիկ Մնացականյան անունով պատանին ամաչում էր հիշել, որ ինքը երբևէ երեխա է եղել և փչացրել է հոր մեխերը: Հիմա այդ մեխերը փտած փայտերի մեջ, գետնում և ուրիշ անհարկի տեղերում էին. որտեղ որ փափուկ էր ու մեխը հեշտ էր գնում՝ տղան պահում ու մուրճով խփում էր:

Վառարանի վրայինը կերակուր չէր, ծոխանք ու լափ էր: Շուն չունեին, շանը գայլերը խլեցին, լափը խոզի լափն էր, դեռ չէր տաքացել ու դուրս չէին տարել, նրա թթվահոտը տան աղջամուղջի հետ խառը կար: Արմիկ Մնացականյան անունով պատանու ձեռից գայլերը նրա շանը խլեցին: Պապոնց քոթոթներից այդ շանն ինքն էր ընտրել, մնացած ավելորդներին ինքն ու պապն էին թաղել, իր բաժին կաթի կեսով ինքն էր մեծացրել, որպես պապը թոռանը՝ ինքը իրեն պատվիրել էր շանն այդ ձմեռ պաշտպանել գայլերից, եկող ձմեռ շունն արդեն ինքը կպաշտպանվի: Շունը դռնով դիպավ ու տագնապած կլանչեց, տղան անկողնուց դուրս թռավ և գոմից դենն ու պառավ տանձենուց դենը, ձյուների մեջ շանը դեռ կենդանի տեսավ, նույնիսկ այնպիսի մի պահ եղավ, որ տղան ու շունը գայլերի մեջ միասին էին, բայց հետո արդեն ձյուների մեջ տղան մենակ էր, պառավ տանձենուց դենը ամայի սպիտակ լանջին կարծես թե երևաց սպիտակ շան բարձր ցատկը, գայլերի մեջ նրա սուր ծկլթոցը խեղդվեց, գայլերը հիմա խումբ չէին, հեռանում էին առանձին-առանձին, բայց շունը ետ չէր գալիս: Տղան զգույշ, եղածից զարմացած ու սարսափելով, շանը կանչեց բայց շունը չկար: Լուսնի տակ պսպղուն ձյուների մեջ կանգնած՝ տղան շանը նորից կանչեց, տղան նույնիսկ լսեց նրա փափուկ թաթն ու հևքը, բայց դա պատրանք էր: Մեծ լուսնի տակ մաքուր ձյուների մեջ տղան մի պուտ իսկ արյուն չգտավ, հենց օդում ցատկի մեջ պատառոտել ու լափել էին, և շփոթված տղան մի ամբողջ հավիտենություն, նրանց քստմնելի իրարանցումն ականջներում, կանգնած էր այնտեղ, ուր գայլերն ու շունն էին: Մի քիչ ուշ մայրն էր ելել և գոմի դռանը կանգնած էր: Տղան ետ-ետ նայելով եկավ, հետո մոր կողքին գոմի դռանը կանգնած նայում էր սպիտակ մաքուր լանջին: Նա չէր վախեցել՝ գայլերի մեջ եղել էր, պսպղուն սառնամանիքի մեջ նա հիմա մերկ ու բոբիկ էր, բայց մոր խոսքը գովեստ չէր. եթե տղան իրեն այդպես հիմարաբար չնետեր ոհմակի մեջ, շունն էլ չէր նետվի և կփրկվեր: Հետո արդեն, քնած երեխաների ու հանգած վառարանի մոտ, մայրը տղային գովեց, բայց դա սուտ գովեստ էր, և մոր իսկական կարծիքը կշտամբանքն էր, որ մայրն այլևս չկրկնեց, բայց տղայի սրտին դա արդեն խարան էր:

Քույրն արթնացավ, անկողնում նստեց և դեռ ոչինչ ու ոչ ոքի չտեսնելով, սկսեց պատմել, թե աղջնակի իր փոքրիկ երազում հայրիկը եկել էր, իրեն համբուրեց, բայց իր համար բան չէր բերել... և պատմելիս տեսավ հորն ու զարմացավ.

— Վա՜յ, դու երազում եկել էիր:

Հայրը վառարանի դեմ մեխ էր փնտրում, հոր մեջ ուրախություն չկար, բայց աղջնակի համար նա քնքշանքի նման մի բան գտավ.

— Երազում եկել էի,— ասաց,— երազում իսկականից էի եկել:

Այդ աղքատ, ցուրտ, գորշ, լափի հոտով ներծծված տանը դա դժվար քնքշանք էր, բայց աղջնակի

ուրախության համար լիուլի քավական եղավ. այտիկները շողալով, աչքերը փայլուն՝ անկողնում նըստած նա լուռ ժպտում էր, հետո ասաց.

— Երազում քեզ քանի տեսնեմ՝ էնքան կգա՞ս:

Վառարանի դեմ ծնկած՝ հայրը հիացմունքից սառպել:

— Քանի տեսնես,— ասաց հայրը,— էնքան կգամ:

Մայրը իրենց անկողինը ծալք էր տալիս, ծալքի վրա ծածկոց էր գցում, մայրն ասաց.

— Քանի տեսնես՝ էնքան կգա, բայց դու քի՜չ տես:

— Ես ամեն գիշեր կտեսնեմ,— ասաց աղջնակը,— անընդհատ կտեսնեմ, որ չգնաս, աչքերս էսպես կփակեմ ու կտեսնեմ:

Աղջնակը վերմակով ուսերը ծածկեց, աչքերը շըփեց ու օրորվեց:

— Կտեսնես,— ասաց մայրը,— կքերես, կրունես ու կղրկեն ուրիշի գործի: Ուրիշի գործին վախճան չկա:

— Էդ էլ կպատահի,— ասաց հայրը:— Մեխ չեմ գտնում:

— Մոխրի մեջ էդտեղ կա,—ասաց մայրը,—բայց պետք կգա՞ն:

— Մեխը մոխրի մեջ ի՞նչ է անում:

Դռան տակ իր անկյունում տղան սեղմվեց: Ամոթից քրտնելով տղան կուչ եղավ ո՛չ միայն այն պատճառով, որ մեխերը ի վերջո ինքն էր վառարան գցել (չափարի փտած փայտերը մայրը վառարան էր գցել և հին, դեռ երեխա ժամանակ խփած մեխերը բացահայտվել էին), տղան շատ ավելի կուչ եկավ, որպեսզի քույրիկն իրեն չտեսնի. Արմիկ Մնացականյան անունով տղայի հագին վառարանի ցոլքերի դեմ բրդե տնագործ այն դեյրան էր, որ մայրը հագել էր աղջիկ ժամանակ և մի երկու տարի հետո քույրն էր հագնելու. աղջնակը գիտեր, որ վառ կարմիր այդ դեյրան իր շորն է լինելու և երբեմն իր վրա չափում էր, երբեմն մեջն էր մտնում: Կարիքի ամբողջ գիտակցությամբ հանդերձ՝ տղայի համար դա վիրավորական շոր էր, բայց, երբ մայրը հագցնում էր, մայրը, համարյա թե զոռով, տղային խցկում էր այդ շորի մեջ, չէր կարելի բարձրաձայն բողոքել, որովհետև երեխաները՝ ախպերիկն ու աղջնակը կարթնանային, և հիմա նույնպես չէր կարելի իր տեղը դռան տակ մատնել, քանի որ աղջնակը կրակի ցոլքերի մեջ կտեսներ ապագայի իր կարմիր շորը և կվշտանար, բան չէր ասի, բայց վշտից կհիվանդանար:

Միակ բանը, որ տղան կարողացավ անել աղջկա այդ շորի դեմ, այն էր, որ պարանն ուսպանդ արեց, այսինքն աջ ուսի վրայով ու ձախ թևի տակով փաթաթեց կրծքին և դռան տակ հորն սպասեց, որպես բանակային շինելն ուսպանդ արած ռուս զինվոր:



Դռան նիգը հոր առջև տըղան գիշերն ինքն էր իջեցրել, և ցուրտ դրսից հայրը ներս էր մտել համարենու թարմ թեփի բույրով, մի պահ կանգնել դըռան մեջ, սենյակի ընտանեկան ջերմության դեմ, ծանր, հոգնած ձեռքը շոյելու պես դրել տղայի գլխին, հետո հոգնածությունից կարծես փըլվում էր, համբուրել էր քնած երեխաներին, և աղջնակն ասել էր. «Ինձ համար ի՞նչ ես բերել»: Աղջնակի տեսածը երազ չէր, դա հենց այդպես էլ եղել էր, բայց դե գյուղի ղեկավարությունը ե՞րբ էր հասցրել հասկանալ, որ հայրը գյուղում է, այդ ե՞րբ էին հորը բանի դրել՝ դա էլ տղայի համար էր երազի նման: Ըստ երևույթին պատահաբար տեսել էին գյուղամիջով գալիս և վռազ հիշել, որ ցուլերը սարում գոմի դուռը ջարդել են... բայց տղային թվում էր գյուղի ղեկավարները իրենց տան կածանին ամբողջ շաբաթը կանգնել սպասել են հոր գալուն, որպեսզի հայտնեն, թե դա թեկուզ նրա գործը չի և ջախջախվելու պես նա հոգնած է, բայց ցուլը սարում գոմի դուռը ջարդել է:

Գուցե հորը խղճալուց, գուցե՝ որ ինքը կարողանում էր երկաթի չափ պինդ ճաղերը մեխել սահնակի պինդ դահուկներին, տղային թվում էր դուռը ինքը կնորոգի, իսկ անասնապահներն ահա մտածում են, որ իրենք միայն անասնապահ են և մեխխփող չեն:

— Գնացի՜նք:— Հայրն շտապ, մեխը կարծես հենց այստեղ մի մոտիկ տեղ էր խփելու, ելավ, գըզրոցը պահարանի խորշը խոթեց ու նորից ասաց.— Գնացի՞նք, գնացի՞նք:— Հայրը կռացավ, վերցրեց ու թևի տակ խփեց պարանի փաթեթը: Դուռը բացելիս հայրն ուսով քսվեց տղայի երեսին, նայեց, հիշեց, որ նա ճանապարհի իր ընկերն է, և խեղճ ու թերահավատ ժպտաց:

— Գնում ես՝ գնա՛,— ասաց մայրը,— որ գալիս ես՝ մեզ համար ի՞նչ ես բերում որ:— Մայրը դա ասաց ակնհայտորեն աղջնակի անունից, դա ուրեմն կատակ էր, բայց թեկուզ սիրով ու թեկուզ կատակ՝ թող չասեին: Հոր թեկուզ պարապ ներկայությունը տղայի համար մի մեծ, մի լիքը նվեր էր: Անհայր որդիների այդ գյուղում, յոթ օրը մեկ հոգնություն ու փայտի թարմ հոտ բուրող հայրը տղայի սիրտը ափեափ լցնում էր երջանկությամբ ու երջանկությունը կորցնելու տագնապով:

Սառը թարմ օդը խփվեց նրանց դեմքին, և պարանը ռուս գիմնազիստի նման ուսապանդ արած, աղջկա կարմիր դեյրայով տղան սրսփաց ու հոր ետևից վազեց: Նա ուզում էր կարծել, որ ինքն ու հայրը արդեն տղամարդ ընկերներ են, բայց իր քայլը հոր քայլից փոքր էր, և ուզեր թե չուզեր՝ վազքով հորից երբեմն առաջ էր ընկնելու, երբեմն, բաց հպարտությամբ հորը նայելով, քայլելու էր համարյա թե ուս-ուսի, երբեմն էլ ետ էր ընկնելու և իր դեմ լինելու էր հոր լայն, նիհար թիկունքը: Իր հետ այդպես շունն էր հանդ գնում, երբ տղան լծվում ու սահնակով փայտի էր գնում:

Աղջնակը, քիթը ապակուն սեղմած, անկողնուց հավանորեն տեսավ ապագայի իր կարմիր շորը եղբոր հագին և անպայման մի քիչ վշտացավ... և տղան այդ շորով գուցե խոտ չշալակի, գուցե այդ շորը հանի, փաթաթի ու թևի տակ ետ բերի, և դա աղջնակի համար մխիթարություն կլինի, առայժմ, ոչինչ, մինչև երեկո թող ապրի ծիտիկի իր տխրությունը:

Հայրը դանդաղեց և ուսի վրայով կանչեց դեպի տուն.

— Այ ախչի՜...

Գոմից գալիս էր խոզի սուր ճղավոցը: Այծը, մոզին, կովը իրենց քաղցի ու տագնապների մասին ինչպե՞ս են իմացնում. քաղցած են, ծարավ թե հիվանդ՝ լուռ այդպես կան, իսկ խոզը նրանց խաղաղ գոյությունը առավոտից վաղ լցրել է իր անձանձիր, անընդհատ, այլանդակ ճղավոցով: Տնից պատասխանի չսպասելով հայրն ասաց.—Է՜ն ճղղոցի մեջ է՜ն կովը մեղք է, է՜ն խոզի լափը տվեք, այ ախչի՜,— և մի տեսակ սայթաքելով քայլն արագացրեց ու առաջ ընկավ: Տղայի դեմ հիմա նրա սեկե լայն թիկունքն էր, գոտի խրված կացնի կոթը և պարանի փաթեթը թևատակին:

Քամին թե սառնամանիքը հորը կարծես քշում էին, կռացած գնալով հայրը կանչեց. «Այ ախչի՜... էն խոզի լափը տո՞ւր»: Տանիքից սպիտակ գոլորշի էր ելնում, վառարանն ուրեմն դեռ չէր բռնկվել... վառարանում տղայի բերած փայտն էր... տղան չոր փայտի աղմկոտ կրակը սիրում էր, տղան հատկապես սիրում էր փայտի կանաչ մորուքները... Հայրը խոզի մասին կանչեց, և վառարանի վրա խոզի լափն էր տաքանում... ուրեմն՝ խոզը երևանցի խաբեբան դեռ չէր առել և գնի վրա, ողորմության պես, կաշվե այն բաճկոնը դեռ չէր տվել, կաշվե բաճկոնը դեռ այդ տանը չէր, երևանցու հագին էր... բայց ուրեմն հոր հագին ի՞նչ էր: Հայրը, ո՜չ, այդ սառնամանիք ձյուների մեջ մերկ չէր, երբ ուսի վրայով ասաց «այ ախչի» և քամուց քշվածի նման արագացավ, հոր հագին որևէ շոր կար, հայրը մերկ չէր, բայց ի՞նչ շոր կար հոր հագին: Գուցե բանակային շինե՞լ: Սառած գետակն ի վար տասը կիլոմետր դեպի երկաթուղի՝ անտառտնտեսությունում հայրը փայտահատ ու գերի ռումինների վրա տասնապետ էր, պատերազմը նոր էր վերջացել կամ դեռ չէր վերջացել,— հոր հագին գուցե իրոք բանակային վերարկու լիներ, չեմ հիշում: Տղան, այո՜, ես եմ, բայց նրանից այնքան եմ հեռացել, որ նա այլևս իր համար առանձին գոյություն է:

Գերիների վրա հոր տասնապետությունը մայրը ծաղրում էր երբեմն խորը չարությամբ, երբեմն անչար ժպիտով էր ասում, թե նա տասնապետ է, երբեմն էլ թաքուն հույս էր փայփայում, թե ի ծնե աշխատավոր այդ մարդուն չնչին այդ իշխանությունը գուցե գայթակղի դեպի առհասարակ պաշտոնասիրություն... այսինքն՝ ձմռան նեղ կածանն ընկած, չի գա իր դռանը միամիտ-միամիտ ընկնի բանդիր ղեկավարների քերանը, այլ որևէ կածանի կանգնած, շաբաթներով կսպասի միամիտ որևէ մշակի, որպեսզի տեղնուտեղը նրան սարը գոմի դուռը սարքելու ղրկի... Բայց հիմա ես գիտեմ, որ զուր էին այդ կնոջ չարությունն էլ, հույսն էլ. այդ մարդն ամաչում էր մի բաժակ ջուր ուզել ինձանից՝ իր որդուց, իր խղճի ձեռին՝ այդ մարդը գերիների գերին էր և ոչ թե նրանց տասնապետը. երևանցի զվարթ խաբեբային այդ մարդը չկարողացավ ասել, թե ինքը խոզ չի ծախում, միակ այդ խոզը, մինչև կանաչ քաղցած գարուն, այդ ձմեռվա մեջ, այդ երեք երեխայի ուտելիքն է՝ միսը, ճարպը, կաշին, ոտքերը, գլուխը: Երևանցի ձեռնածուին նա չկարողացավ ասել, թե կաշվե այդ բաճկոնը նախկինում գուցե նույնիսկ ղեկավարներ են հագել, անգամ գուցե նույնիսկ կոմիսար է հագել, բայց հիմա հին է, շատ հին, ուղղակի մոխրագույն է. ժպտուն առևտրականն ասաց՝ «Խոզի ճարպ կքսես՝ կփայլա»:

Մինչև ձորը, մինչև Դանիելանց տների ծածկվելը տղան գնաց հորը ուս-ուսի: Զորում, լայն, որձաքարե սալի պես պինդ սառույց կապած առվակն անցնելուց հետո, սպիտակ լանջն ի վեր կածանը նեղացավ, և տղան ստիպված էր հորն առաջ թողնել և ինքը գնալ ետևից, բայց այլևս զգուշանալու բան չկար, քանի որ ամբողջ սպիտակ լանջին միայն իրենք էին: Դա սահնակի ճանապարհն էր, կայուն զույգ ակոսով, որ պինդ սառցակալած էին, տղան փայտ էր բերում, տղան մտածում էր, որ դա իր երկաթուղին է, տղան կարող էր անտառի ընդհուպ պռնկից թողնել բարձած սահնակը, և սահնակն անշեղ կգար, բայց տղան չէր թողնում, քանի որ, եթե ճամփին մարդ էլ չլիներ, թափ առած կգար սառույցին կխփվեր ու կթռչեր ձորը:

Հայրը սահնակի ուղին ավերում էր, նրա ծանր քայլերի տակ ակոսների տողանը փշրվում էր, վաղըն այլևս սահնակն այնպես սահուն չէր փախչի, բայց ուղու երկու կողմից ծնկահար ձյուն էր, և տղան թաքուն գոհ էր. որ իր բացած ճանապարհն

ահա այդպես տվել է հորը: Տղայի գործը վաղը դըժվարանալու էր: Սահնակի ճանապարհից հայրը դուրս եկավ ու գնաց ձյուների միջով: Սառած ձյունը ոտքի տեղով մեկ կոտրվում էր, և հոր ոտքերը խըրվում էին մինչև ծնկները: Թեթև ու անկշիռ՝ իր ուղիով տղան գնաց ու առաջ ընկավ, և քայլեց կրունկները խփելով սառցակալած ակոսներին, հենց ջարդելով, հենց կոտրելով, հորը հրավիրելով հենց ջարդել, հենց կոտրտել ակոսները: Հայրը գուցե ժպտաց, խեղճ սիրով գուցե «քուռակ» ասաց, գուցե դառնացավ ու հայհոյեց այս ցուրտ, քաղցած, դաժան աշխարհին... բայց քիչ հետո ենթարկվեց ու մտավ տղայի կածանը, և տղան այդ ժամանակ տրեխի թելը կապելու պատրվակով իրեն ետ պահեց ու գնաց հոր ետևից, քանի որ չէր կարելի անընդհատ նրա աչքի առաջ լինել և ամոթի պես անընդհատ հիշեցնել, թե ես անա տղա եմ, բայց ինձ աղջկա շոր եք հագցրել:

Ջրի բերանում կտրուկ զառիթափի տակ եղբայրը թակարդ էր լարել: Թակարդը նրա համար բացել էր ինքը տղան, բայց դա եղբոր թակարդն էր, քանի որ նա էր ուզում հինգ հարյուր ռուբլու գայլ բռնել: Եղբայրը հետք չուներ, նիհար ճուտի չափ նրա մարմինը տղայի ճանապարհին հետք չէր թողել, և թվում էր, թե աստծու թակարդն է, թակարդը երկընքից են դրել, թակարդի շղթային ավելացրել էր իր կանաչ տրխաթելը, մի ուրիշ թել, ինչ-որ հին շորի եզրակար և ձյուների վրայով տարել հասցրել, կապել կաղնու գաճաճ թփին: Գայլն իբր տղայի կածանով գալու, ընկնելու էր թակարդը: Հայրը կացինը գոտուց դուրս քաշեց, ասաց՝ «Տանու կենդանի-մենդանի կընկնի մեջը», կոթը մտցրեց թակարդը տրաքացնելու, բայց ասաց՝ «Որտեղի՞ց է անասուն ընկնելու»:

— Դո՞ւ ես դրել,— ասաց հայրը:

— Ախպերիկը,— ասաց տղան,— ախպերիկը:

Թելի երեխայական կապերին նայելով, հայրը լաց լինելու պես ծիծաղեց: Ջուրը վերջացավ, դուրս եկան կտրուկ զառիթափի տակ: Վերելքն սկսելուց առաջ հայրը ետ՝ գյուղին նայեց և տղան նույնպես նայեց. գյուղի վրա ոչ մի ձայն չկար և կարծես ծուխ էլ չկար, գյուղը կարծես մարած էր: Այս անգամ տղան տեսավ հոր կոկորդին խցված դառը գունդը: Ռազմաճակատից քառասունութ տղա ետ չէր եկել, քառասունութ հնձվոր, սայլվոր, եզնարած, ուսուցիչ, մանկալ, փայտահատ, հյուսն՝ մի ամբողջ զնգուն համերգ: Հայրը դառնությամբ այե՛ արեց՝ այե՛, այսինքն թե չի հասկանում ի՞նչ եղավ, ի՞նչ պատահեց, այդ ի՞նչ չար խորհուրդ էր:

— Խե՛ղճ,— ասաց հայրը:

Դա գուցե սառած ամբողջ աշխարհի մասին էր, գուցե միայն գերիների: Հայրը չպատմեց, հայրը չէր պատմում, ըստ երևույթին պատմելու բան չկար, քանի որ հայրը ռուսերեն չգիտեր, գերիները՝ հայերեն և հայրն ու գերիները՝ ռուսերեն: Իսկ ինչը որ լուռ, առանց լեզվի էր լինում՝ քստմնելի էր: Ռումինների ռուսերեն «ռուկի վերխ» և հոր գերմաներեն՝ «հենդի հոխ» հրամանները վաղուց դարձել էին հիմարություն, և հիմա նրանք՝ հայրն ու ռումինները, սառած գետակն ի վար տասը կիլոմետրի վրա՝ անտառում էին, փայտ էին կտրում, որպեսզի գարնան վարարումների հետ քշեն երկաթուղին և նրանց արանքներում ատելություն չկար, քանի որ նույնիսկ ատելու համար էլ ուժ է հարկավոր: Բայց ավելի մեծ ուժ և՛ հորը, և՛ գերիներին, ծառ կտրելուց և խորանարդ առ խորանարդ դարսելուց և միմյանց ատելուց շատ ավելի մեծ ուժ, մի ուրիշ բանի համար էր հարկավոր, և նրանք չունեին. հաճարենու դարավոր անտառը նրանք հատում էին այնտեղ, ուր Հովհաննես Թումանյանի տունն էր լինելու. իրենց խորանարդները նրանք բարձրացնում էին հենց լուսավոր այն բացատում, որը փռվելու էր Հովհաննես Թումանյանի տան առաջ: Իրենց գերությունը նրանք բերել բնակեցրել էին հենց այդտեղ և խաթարում էին Թումանյանի բարության ու սիրո աշխարհը:

Ծմակի ընդհուպ պռնկից մինչև զառիթափի տակը անաղարտ ձյուն էր, մաքուր երկնքի տակ կապտին էր տալիս, և միայն սահնակի ուղին էր իջնում ծմակի ընդհուպ պռնկից մինչև զառիթափի տակը: Այդքան ուղիղ՝ քարտեզի վրա միայն Պետերբուրգ— Մոսկվա երկաթուղին է: Քարտեզի վրա՝ ռուս ցարը քանոնը դրել ու գծել էր իր երկաթուղին, և ռուս ճորտերը ճահիճներում պառկել ու իրենց վրայով անցըրել էին ցարի ուղիղ երկաթգիծը: Տղայի ուղու կառավարիչն ու ճորտը միայն ինքը տղան էր եղել: Երկրորդ անգամ, երբ տղան ստիպված էր սահնակը թողնել ու ետ՝ անտառ փախչել, սահնակը թափ էր առել ու նետվել աջ կողմի հեղեղատը: Հեղեղատը շատ խորը չէր, բայց գերեզմանափոսի պես միանգամից էր, և երբ փայտերը հատ-հատ դուրս էր գցել և ուզում էր ինքը ելնել՝ հեղեղատը ետ էր քաշում, չէր թողնում, և այդ անգամ տղան գիշերով տուն հասավ: Շավարշ փոքր հորեղբոր մերունը գայլերն այդ փոսում էին կերել. շրջապատել, փոսն էին գցել ու փոսի նեղվածքում խեղդել, թե չէ՝ ազատության մեջ նրանք ևս, երկարաղունչ, համարյա թե վայրենի այդ մերունի պոչն էլ չէին պոկի:

Հեղեղատի և ուղու արանքում, որտեղից երկրորդ անգամ սահնակը թռել էր, տղան ձյան պատնեշ էր բարձրացրել, բայց այնքան էլ վստահ չէր, թե այդ պատնեշը, եթե սահնակն ու ինքը թափով բախվեին, կդիմանա՞ր, և այդ ոլորանում միշտ մի քիչ վախենում ու անցնելուց հետո թաքուն ժպտում էր:

Հայրը պատնեշը նկատեց: Նկատեց, պատնեշի գլխով նայեց հեղեղատի հատակին, երևի տեսավ

փայտի չոր կեղևները և որդու ծնկների հետքերը և նորից այն արեց՝ այնե՜…

— Այ՛ տղա, փուռն ես ընկե՞լ,— անցած-գնացածի համար վախեցավ նա։

— Չեմ ընկել, թողեցի թռավ։

— Թե՞ ընկել ես։

Տղան ճիշտ չէր ասում, տղան ինքը չէր թողել, տղային թողնել էին տվել։

— Ծա՞ռ է չարչարում։

— Չարչարո՞ւմ,— զարմացավ տղան։— Բարձում եմ՝ ինքը գալիս է։

Հայրը սրտնեղեց.

— Այնե՛… բարձում ես՝ ինքը գալիս է, ձի է։

Բառերը մեր մտքում հատուկ կերպարներ ունեն։ Խնձորը, օրինակ, այն է, երբ տաքության մեջ խելքդ պղտորվել է, միրուն հորաքույրը բերանը մրթմունջով հպում է ճակատիդ և սառը, բուրող, իր այտի պես թառամած մի բան է դնում ձեռքդ, և երկու օր հետո ես տեսնելու, որ ծոցիդ մեջ խնձոր կա։ Չարչարանքը տղայի մտքում մեծերի աշխատանքն էր, փոքրերի լուռ տառապանքն ու լուռ մնչոցները չարչարանք չէին։

— Աշխարհքեկ հորեղբայրը շատ չարչարվեց,— ասաց տղան։— Մեղրատանձու բլրից գերանը բաց թողեց, մինչև ներքև գերանը թռած եկավ, բայց ծայրը լռվել էր, եզներով ինչքան քաշում էր՝ չէր քաշվում։ Եզների լուծը լռվել էր, եզներով ինչքան քաշում էր՝ չէր քաշվում։ Եզների լուծը ջարդվել էր, լծի տեղը հորեղբայրը մի լատան դրեց, բայց եզների ուսը ցավեցնում էր, եզները չէին քաշում, ետ-ետ էին անում։ Ինքն էլ մրսում էր, ամբողջ օրը մատներին փչում ու եզների վրա ծղրտում էր։ Որ հորեղբայրը լատան կտրեց՝ անտառապահը Քառանց բլուրին կանգնել ու նայում էր, նայում էր։ Հորեղբայրն ասաց. «Արի՛, արի՛… մոտեցար թե չէ՝ լծելու եմ»։ Չմոտեցավ, կանգնել ու նայո՜ւմ էր, նայո՜ւմ էր։

— Գերանն ինչո՞ւ էր մեր դռնով տանում,— ասաց հայրը,— ինչո՞ւ չէր ներքևի հանգիստ ճամփով տանում։

Տղան սոսկաց, որ նրան մեծի հասուն պատասխան է տալու, բայց ուրիշ պատասխան չուներ։

— Չգիտեմ,— ասաց տղան,— Մեղրատանձու բլրից բաց թողեց ու մեր դռնով էր տանում։ Ծղոտն հին էր, շուտ-շուտ տրաքում էր, լուծը կոտրել էր, եզները չէին քաշում։ Ես եկա փայտի, ետ գնացի՝ ձյուների մեջ ինքը դեռ չարչարվում էր։

— Պատերազմից առաջ էդ գերանը պիտի որ ես ու ինքը սարքած լինեինք,— հիշեց հայրը։— Հինգ էինք գնում, մինչև տղերքը կհավաքվեին՝ կացինն իրար ձեռից խլելով սարքեցինք ու հանեցինք ճանապարհ։ Տղերքը եկան տեսան՝ գերանին նստած սպասում ենք։— Հայրը հոգոց քաշեց։— Գլորել ու տարել է։

— Մայրիկն ու երեխեքը կարծում էին նախագահը կարգադրել է՝ մեր դուռն է բերում, մայրիկը թաքուն շփոթվել էր՝ թե նրա առաջ որտեղի՞ց է հաց դնելու… դեռ եզներին էլ խոտ էինք տալու… բայց մեր դռնով անցըրել տարել էր։

— Ոչինչ,— ասաց հայրը,— տարել՝ տարել է, չարչարվել՝ չարչարվել է։ Հիմա էնքա՜ն կան, որ հողի տակ են ու չեն չարչարվում, էնքա՜ն կան, որ կուզենային լինել ու չարչարվել։

— Հետո գնացի տեսա,— ասաց տղան և ամաչեց. ամբողջ աշխարհի տառապանքի մեջ ինքը իր փոքրիկ գնալ-տեսնելն է նկատում,— ներքևի հանգիստ ճանապարհով՝ ջրի կամուրը սառել ու ուռել էր, գերանը եզների հետ ձորը կընկներ, պինդ սառույց է, ծիտը կանգնի՝ կսայթաքի, մեկ էլ…

— Մեկ էլ ի՞նչ։

— Գերանը մեծ էր, մինչև Մեղրատանձու բլուրը եզները դժվար կեռմաններով էին քաշել, էդքան տեղը թող գլորվեր, եզներն էդքան տեղը թող չըքաշեին։

— Դե լավ,— ասաց հայրը,— գերան է, տարել՝ տարել է։

— Ես գերանի մասին չեմ մտածում, եզները շատ չարչարվեցին։

— Դո՞ւ,— ասաց հայրը,— դու չես չարչարվո՞ւմ։

— Ես սահնակը վերցրի եկա։ Հետո որ ետ գնացի՝ մեր Հրայրը ձյուների մեջ կանգնել ու եզների հետ տնքում էր, հորեղբոր ծղրտոցների հետ կուչ էր գալիս։ Ձյուների մեջ մինչև գիշեր էդպես կանգնած էր, մայրիկը կանչում էր՝ չէր լսում։

— Էլի օգնություն է,— ասաց հայրը։— Դասերդ ո՞նց են գնում։

— Դասե՞րը։ Մի երկու լինգ էր պետք ու մի երկու տղամարդ, որ լինգը տա՜կը տային ու գերանը լնգեին։ Հորեղբայրը խրել էր, տնքում ու ուսի վրայով նայում էր՝ թաղում մարդ չկար, միայն Քառանց բլուրին անտառապահն էր։

Հայրը հեգնեց.

— Բա Թոզի բիձեն ի՞նչ էր։

— Թոզի բիձոնց աղբյուրի ձորն էր ընկել, ինչքան կին կա ճվճվում, անիծում ու թոկերով քաշում էին՝ ցեխից դուրս չէր գալիս։

— Էդ ե՞րբ։

— Որ ես փոքր էի,— ասաց տղան։

Հայրը ժպտաց.

— Հիմա մեծ ես։

Տղան հիմա էլ փոքր էր, բայց այն ժամանակ բոլորովին էր փոքր։ Լապտերի դեղին, հիվանդոտ, չեղած լույսով, կանայք ծղրտում, տնքում ու անիծում էին հավասարապես Հիտլերին ու Թոզի բիձուն։ Առվակն ի վար՝ ցեխ էր, կովին ներս էր քաշում, վեր՝ կտրուկ զառիթափ, և կանայք պարանները գցել ու կովին դեպի լանջն էին քաշում, ձյունախառն հողը

## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ԴՊՐՈՑԸ ՕԳՆԵՑ

«Թափառաշրջիկների» մասին ես առաջին անգամ լսեցի Երևանի №117 դպրոցում: «Թափառաշրջիկներ» կոչում են այստեղ հանրօգուտ աշխատանքից խուսափող մարդկանց, որոնց երեխաներին միջնակարգ կրթություն տալու գործում դպրոցը լուրջ դժվարությունների էր հանդիպում:

Այդ երեխաները տարվա մեծ մասն անց են կացնում առանց ծնողների հսկողության, որովհետև ծնողները վարում են թափառաշրջիկ կյանք, ոտնատակ տալով երեխաների և ընտանիքի շահերը, մեկնում են հեռավոր գյուղերն ու սարերը՝ կանխավայն ըահադիտական նպատակներով, և երկարատև բացակայում են տնից:

Տարիներ շարունակ մանկավարժներն ու դասընկերները ամեն կերպ աշխատում էին նրանց երեխաներին կապել դպրոցի հետ, սակայն համարյա միշտ հանդիպում էին ծնողների դիմադրությանը:

Վիճակը փոխվեց այն բանից հետո, երբ դպրոցում գործող կոմերիտական «Լուսարձակ» շտաբն սկսեց աչալուրջ հետևել ծնողական հսկողությունից զուրկ երեխաներին՝ նրանց ոչ մի բացակայություն աննկատ չթողնելով: Կոմերիտականներ Աշոտ Անանյանը, Արաքսյա Հովհաննիսյանը, Ռաֆիկ Հարությունյանը և մյուսներն անմիջապես իմանում են այդպիսիների բացակայությունների պատճառները և օգնում նրանց դպրոց վերադառնալ:

Դպրոցի մանկավարժական կոլեկտիվին մեծ օգնություն են ցույց տալիս նաև ծնողական կոմիտեն, պիոներական դրուժինայի խորհուրդը, նախկին շրջանավարտները, որոնցից շատերը շարունակում են կապ պահպանել դպրոցի հետ և օգնել պիոներական աշխատանքների կազմակերպմանը: Դրա շնորհիվ վերջին չորս տարում «թափառաշրջիկների» երեխաներից շատերը միջնակարգ կրթություն են ստացել և աշխատում են մայրաքաղաքի տարբեր ձեռնարկություններում կամ սովորում են պրոֆտեխնիկական ուսումնարաններում ու տեխնիկումներում:

Ընկերների, մանկավարժների օգնությամբ հաղթահարելով ընտանեկան խոչընդոտները, նրանք մասնակցում են արդեն նաև դպրոցական գործերին: Իսկ նախկին շրջանավարտ, պրոֆտեխնիկական ուսումնարանի գերազանցիկ Վանիկ Այվազյանը դարձել է յոթերորդ դասարանի արտադրությունից եկած ջոկատային ջոկատավար:

— Ընտանեկան աննպաստ պայմաններում գտնվող երեխաներին դպրոցի հետ կապելու լավ միջոց է սպորտը,— ասում է դպրոցի «Օլիմպոս» սպորտային ակումբի նախագահ, ութերորդ դասարանցի Աշոտ Անանյանը: —Վերջերս, օրինակ, կազմակերպել էինք թենիսի և վոլեյբոլի մրցումներ, որոնց նրանք էլ էին ակտիվորեն մասնակցում և մի քանիսը մրցանակային տեղեր գրավեցին...

Նույնիսկ ամառային արձակուրդներին դասընկերները նրանց առանց հսկողության չթողին: Դպրոցի բակում պիոներական ճամբար էր կազմակերպված, և հետաքրքիր միջոցառումներն ու սպորտային խաղերը ճամբար էին բերում այն երեխաներին, որոնք զրկված են ծնողական անհրաժեշտ հսկողությունից:

*ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

---

նրանց ոտքի տակ փախչում էր, և կանայք ծղրտում ու անիծում էին Հիտլերին, կովին, Թոզի բիձուն, թե ինչու չի կարողացել մի դույլ ջուրն իրքը տանել, ողի, նիհար կովը բերել ձորն է գցել: Հետո գյուղամիջից եկան լապտերը հանգցնել ու ձայները կտրել տվին, գյուղի վրա ինքնաթիռի հոնդոց էր պտտվում, և լուռ կանայք կովի վրա կարպետ գցեցին և, կովը ցեխի մեջ խրված, սպասեցին: Ասում էին. «Հիտլե՛ր, թոփը փորո՛ւմդ տրաքի», հետո ասում էին՝ «Իիի՛, Թոզի՛ բիձա, մի ջոկ թոփ էլ քո՛ւ փորումը տրաքի», ու անզորությունից ծիծաղում էին: Լապտերը մոր ձեռքին էր: Մայրը չէր ուզում ենթարկվել և պատրույգը մի քիչ իջեցրեց: Նրա վրա շշուկով գոռացին, և մայրը լապտերը հանգցրեց ու անեծք ծղրտաց, բայց նրան ասացին՝ ձենդ, և լրիվ խավար էր ու խավարի մեջ ինքնաթիռի հոհնդի տակ՝ կովի հնազանդ տնքոցը:

*(Շարունակելի)*



# ԻՐԻԿՆԱՅԻՆ ԶՎԱՐՃՈՒԹՅՈՒՆ

*ՆԱՏԱԼՅԱ ԲԱՐԱՆՍԿԱՅԱ*

Արձակուրդներն ավարտվում էին, ավարտվում էր և ամառը: Մենք նոր էինք վերադարձել գյուղից՝ հյուր էինք գնացել հորս ծննդավայրը: Գնացել էինք չորսով՝ հայրս, մայրս, ես և քույրիկս՝ Նատկան: Վերադարձանք հինգով՝ մեզ հետ բերեցինք տատիկին: Տատիկը ամբողջ ձմեռ մեզ հետ պետք է ապրի, հիմա մենք բնակարան ունենք: Մայրիկն ուրախ է, իր գործը թեթևացավ, իսկ տատիկն ասում է. «Ես էստեղ կտխրեմ՝ առանց անտառի, առանց ջրի»: Գետը նկատի ունի, իսկ մենք ծիծաղում ենք. «Ջուրը հրես, և՛ սառը, և՛ տաք»: Կատակին տատիկը պատասխանում է. «Ջրհորն է լավ, ոնց որ մեր գյուղում, Կոլկան (այդ ես եմ) դույլերով ջուր կբերեր»:

— Համա՞ թե բան հնարեցիք,— ասում եմ ես,— ջրհոր, լծակ, դույլ, կացին, փայտ,— այդ բոլորը անցյալ դարին է պատկանում: Հիմա կյանքն ուրիշ է, հարմարություններով՝ ջեռուցում, լուսավորություն, գազ և հեռախոս (հեռախոսը դեռ չկա, բայց կլինի):

Երեկոյան բակ դուրս եկա, մեր տղաներից ոչ ոքի չհանդիպեցի, վազեցի ընկերոջս՝ Վալերկայի մոտ, նա էլ պիոներճամբարից դեռ չէր վերադարձել: Նստեցի նստարանին ու տխրեցի: Վերջին ազատ օրերն են, իսկ ես պետք է այսպես, առանց զվարճությունների, նստեմ:

Մեկ էլ հանկարծ մոտեցան երեքը՝ մեկը բարակ, երկար, ձեռքերը թևքերից դուրս պրծած, ճարպոտ մազերը ուսերին թափված, հետո էլ երկու կարճահասակը: Մեկը մեր դպրոցից է, կարծեմ, յոթերորդ «Ա»-ից, իսկ մյուսին, թխամազին, չեմ ճանաչում: Երկարին իսկույն հիշեցի, մի տեղ տեսել էի, նույնիսկ անունը հիշեցի՝ Խվոշչ: Մականունն է Խվոշչ, այդպիսի մի խոտ կա, ձիագի կամ ձիու պոչ:

Նստեցին կողքիս, և երկարն ինձ հարցրեց.

— Ծխելու բան ունե՞ս:

Ես գլուխս տարուբերեցի՝ ոչ:

Նա՝ ճլըստ, թքեց ատամների արանքից ու նորից հարցրեց.

— Իսկ փող ունե՞ս:

— Որտեղի՞ց,— պատասխանում եմ:

— Արի, ասում է, գնանք մեզ հետ նորատունկ այգին ման գալու: Այդպես ենք մենք անվանում մեր փողոցի նորատունկ մեծ պուրակը:

Ես չէի ուզում գնալ, արդեն ուշ էր, շուտով ընթրիքի ժամն էր, իսկ սրանք կպել էին՝ գնանք, հա գնանք: Այստեղ ես ինձ ասացի. «Բայց չէ՞ որ դու տխրում էիր, հիմա գնա զվարճացի՛ր»:

Պուրակում ոչ ոք չկար, զով էր և արդեն մթնում էր: Տղաները փորձում էին նստարանների վրայով թռչել: Չէր հաջողվում: Նրանք վայր գցեցին մի նստարան ու սկսեցին վազքով ցատկել նրա վրայից: Խվոշչի ոտքը հանկարծ դիպավ նստարանին և կատաղությունից սկսեց կրնկով խփել նստարանին, ջարդել փայտաձողը: Երկու կարճլիկներն ուրախացան, ծիծաղեցին, թխամազը երկաթյա մի ձող ճարեց ու սկսեց փշրել նստարանը:

— Իսկ դու ինչո՞ւ ես անգործ կանգնած,— Խվոշչը ինձ նկատի ուներ:— Իրեն տուր կրակխառնիչը:

Թխամազը ձողն ինձ տվեց, և ես սկսեցի կացնի պես թափահարել այն:

Ճռնչաց նստարանը, տնքաց: Ես ջարդելուց ձանձրացա, մի կողմ նետեցի ձողը:

Հեռանում էինք տնկիների միջով: Խվոշչը ջարդուփշուր էր անում թփերը, տրորում մարգախոտերը, ծաղիկները, մենք էլ՝ նրա ետևից:

Մենք հետևում էինք նրան, ինչպես կալչուններըՙ շնաձկանը: Այո՛, ես նույնպես:

Մյուս երեկո նրանք եկան իմ ետևից, կարծես, առանց ինձ անել իք չունեին: Մենք նորից դեսուդեն էինք ընկնում պուրակում, միայն այսօրվա զվարճությունն ուրիշ էր, քարերով կրակում էինք էլեկտրական լամպերին, այն լամպերին, որոնք տոն օրերին են վառում: Եթե դիպցնում էինք, լամպերը պայթում էին, ապակին վնգում էր: Բայց մենք գնալով ավելի հաճախ էինք վրիպում, և ես հասկացա, որ մթնում է:

— Ուշ է,— ասում եմ,— ես գնացի, թե չէ մայրս կբարկանա:

— Իսկ հայրդ չի՞ բարկանա,— հարցրեց Խվոշչը մի տեսակ կծու:

— Գուցե նա էլ բարկանա,— պատասխանում եմ ես,— իսկ քոնը ո՞նց:

— Իսկ ես ծնվածս օրից հայր չեմ ունեցել,— հռհռաց Խվոշչը:

Հետո առաջ վազեց, բռնեց մի բարալիկ կեչի, պտտվեց շուրջը և հանկարծ կռացրեց մինչև գետին: Երկար, տնքացող ճռռոց լսվեց, և մատղաշ ծառը կոտրվեց:

— Ինչո՞ւ ես կոտրում, ապո՛ւշ,— գոռացի ես:

Իսկ Խվոշչը նորից հռհռաց ու կախվեց մյուս կեչուց: Ես փախա, որ չտեսնեմ: Ինձ թվաց, որ նա ջղգրու է կոտրում: Իսկ ինչո՞ւ: Ես որոշեցի այլևս նրանց հետ չգնալ: Թող գրողի ծոցն անցնեն:

Ինչպես բոլոր նորաբնակները, մենք էլ էինք գարնանը ծառեր տնկել մեր տան մոտ: Եվ բաժանում էինք կատարել, թե որը ումը կլինի, մայրիկին՝ արոսենին, հայրիկին՝ թխկին, իսկ ինձ՝ լորին: Նատկան էլ էր օգնում, բռնում էր բներից, նրան էլ կեչին բաժին ընկավ:

Երրորդ երեկոյան եռյակը նորից եկավ: Ես ըպբռնելուց հրաժարվեցի: Նրանք նստեցին նստարա-

նին, և Խվոշչն սկսեց իր հոր մասին փչել: Երեկ ասում էր. «Ծնվածս օրից չեմ ունեցել»: Իսկ այսօր հայրը մինիստր դուրս եկավ: Ես Խվոշչին ոչինչ չհարցրի՝ հիմա շատերը կան, որ հայր չունեն: Չգիտեմ, հանկարծ ի՞նչը ստիպեց Խվոշչին հորով պարծենալ: Ասում է, նա ունի երկու մեքենա, սեփական մոտորանավակ Մոսկվա գետի վրա, իսկ տանը՝ իսկական մեծ բիլյարդ: Ասում է, ուզենամ, կարող եմ նավակ քշել, կամ բիլյարդ խաղալ: Ես լռում եմ, իսկ նա փչում է ու փչում, է՛լ ամառանոցի մասին, է՛լ որսորդական շների, գունավոր հեռուստացույցի: Եվ ամեն երեք բառից հետո. «Չե՞ս հավատում: Չե՞ս հավատում»:

Զանձրացրեց ինձ իր հորով: Որպեսզի ձեռ քաշի, ասում եմ.

—Իսկ իմ հայրը հասարակ բանվոր է, աշխատում է գործարանում, պատահում է՝ ցերեկային հերթին, իսկ հիմա՝ գիշերային:

Խվոշչն անհանգստացավ, սկսեց գրպաններում ինչ-որ բան փնտրել:

— Տղե՛րք, ո՞վ Երկուկոպեկանոց ունի: Ես պետք է հորս պանգահարեմ:

Եվ դառնալով ինձ.

— Որտե՞ղ կա ավտոմատ հեռախոս:

«Գնում է, ավելի լավ»,— մտածեցի ես ու մի երկուկոպեկանոց տվեցի իրեն:

— Եկեք հե՛տս, տղե՜րք: Կո՛լյա, ցո՛ւյց տուր որտեղ է հեռախոսը, պանգահարեմ հորս ու գնամ իր մոտ գիշերելու, վաղուց չենք հանդիպել:

«Շատ էլ լավ է»,— մտածում եմ: Ուղեկցեցի, հեռախոսախցիկը մեզնից երկու տուն այն կողմ է, և ասում եմ.

— Ցտեսություն...

— Ո՛չ, սպասի՛ր, լսի՛ր, թե ինչպես եմ հորս հետ խոսելու: Ես, ախր, տեսնում եմ, որ դու ինձ չես հավատում:

Ինչո՞ւ ես՝ ապուշս չհեռացա: Գլխի չընկավ բետոնե գլուխս: Չհասկացա, որ Խվոշչն էլ էր ուզում, որ ես հեռանամ: Իսկ պահում էր ինձ հենց այնպես, միայն ձևի համար: «Մի՛ գնա, լսի՛ր, չէ՛, լսի՛ր»... Իսկ ի՞նչը լսեի: Ո՞ւմ հետ էր խոսելու: Չէ՞ որ ես հասկանում էի, որ չկար այդպիսի մարդ: Եվ այնուամենայնիվ բթությամբ պատասխանում եմ.

— Դե լավ, խոսի՛ր...

Երեքով կանգնած ենք հեռախոսախցիկի շուրջը, իսկ Խվոշչը ներսում գոռում է. «Ալլո՛, ալլո՛», խփում է ապարատին հայհոյում: Հետո հանդարտվեց, և լռության մեջ մենք լսեցինք կանացի մի բարձր ձայն.

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՐՔԱՅԵԼՅԱՆԻ



«Լսում եմ, ես ձեզ լսում եմ, դե խոսե՛ք»:

Խվոշչն իսկույն խոսք չգտավ, իսկ հետո բղավեց. «Ես քեզ չէի պանգահարում»: Մենք ծիծաղեցինք: Հանկարծ հեռախոսախցիկում մի բան չխկաց, հետո կիթառի լարի պես կնգաց, և Խվոշչը կարմրատակած դուրս պրծավ խցիկից:

— Ձեր ավտոմատը չի աշխատում,— ասում է ու ինչ-որ բան քիթս խոթում,— ա՛ռ, հիշատա՛կ պահիր:

Լսափողի մի կտոր էր, նրա վերին մասը:

— Դու, ի՞նչ է, ցնդեցի՞ր, հեռախոսն ես ջարդում:

— Իսկ դու, ի՞նչ է, էնտելիգե՞նտ ես, ի՞նչ է, առանց հեռախոսի ապրել չե՞ս կարող:

Այստեղ ես նրան ուղարկեցի ուր որ հարկն է, լըսափողի կոտրված կտորն էլ ետևից նետեցի: Իսկ նա վերցրեց այդ կտորն ու խփեց իմ մեջքին:

Ես հեռանում էի ու մտածում. «Մնաս բարով, Խվոշչ, էլ չենք հանդիպի, քո ճամփան դեպի ձախ է, իմը՝ դեպի աջ»:

Երբ ես տուն վերադարձա, հայրս աշխատանքի էր գնում:

Բարկացած ասաց.

— Շատ ես թափառում, Նիկոլա՛յ...

Մայրս նրան ընդհատեց, հարցով.

— Արդյոք աղջիկ չի՞ երևացել հորիզոնում:

Մորս համար աղջկանից սարսափելի բան չկա, նույնիսկ ծիծաղելի է:

Տատիկն էլ տեղնուտեղը ելույթ ունեցավ.

— Դու, Կոլյա՛չկա, ուշ ժամերին մի՛ թափառի, կապույի շները կգզեն, չէ՞ որ գիշերները նրանց բաց են թողնում...

Բոլորը բարձր ծիծաղեցին: Ա՛յ թե ինչպես է լինում. ծիծաղում ես ու չես իմանում, թե ինչ է քեզ սպասում:

Գիշերվա կեսին տատիկն ինձ արթնացրեց. «Նատկան մեռնում է»: Ես չհավատացի: «Մայրիկն ո՞ւր է»: Տատիկն ասում է. մայրիկը գնաց բժիշկ կանչելու, ասաց՝ տասը րոպեով, բայց արդեն կես ժամ է չկա, ժամը երկուսն անց է կես, գուցե մորդ բա՞ն է պատահել, իկուր քիս վեր չկացրեց, հետը գնայիր:

Նատկան ծանր էր շնչում, տնքոցով. հայացքը պղտոր էր ու անորոշ, բերանի անկյունից թքի շիթ էր ձգվում, մեկ էլ ցնցումներ սկսեցին: Տատիկը լացուկոծ դրեց. «Ավելի լավ է ես՝ պառավս մեռնեի»: Մայրիկը շնչակտուր ներս մտավ.

— Ավտոմատը ջարդված էր, ստիպված խանութ հասա... «շտապ օգնությունը» խնդրեց դիմավորել... դո՞ւրս եկ, կանգնի՛ր...

Եկան, Նատկային մայրիկի հետ Ռուսակովսկի հիվանդանոցը տարան:

Առավոտյան եկավ հայրս, շտապեց պանգելու: Վերադարձավ ու ասաց.

— Ես կկոտրեի հեռախոսը ջարդող այդ ճիվաղի ձեռքը: Նատկան վատ է, կույր աղիքի թարախային բորբոքում, գիշերը օպերացիա են արել:

Ամբողջ օրը մտածում էի. մեղավո՞ր եմ, թե՛ ոչ: Ասե՞մ հորս, թե՞ չասեմ: Եվ հենց որ վճռում էի, որ մեղավոր չեմ, ավելի նողկալի էի զգում ինձ: Իսկ երբ ասում էի՝ «մեղավոր եմ», սարսափում էի: Մտածում էի, իսկ եթե հանկարծ Նատկան չառողջանա՞: Եվ այստեղ կոտրված կեչին հիշեցի: «Կյանքում բոլոր բաները կապված են մեկը մյուսին,— մտածում էի ես,— միշտ չէ, որ երևում է կամ հասկանալի է, թե ինչու, բայց կապված են, դա հաստատ այդպես է»:

Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ



# ԱՐԱՔՍՅԱՆ ԿԱՂՆԻ

Կաղնի ասելով դուք պատկերացնում եք բարձր, հզոր, ճյուղատարած, փարթամ սաղարթավոր ծառեր: Սակայն այդպիսին չէ արաքսյան կաղնին: Դա փոքր, ցածրաճ, թփանման ծառ է, որի բարձրությունը սակավ դեպքերում միայն հասնում է 12—14 մետրի: Ճիշտ է, վերջերս լույս տեսած «Հայկական ՍՍՀ ատլասում», որը նախատեսված է դպրոցականների համար, արաքսյան կաղնին պատկերված է որպես խոշոր, հզոր ծառ, որն իր բարձրությամբ չի զիջում անտառի նահապետներին՝ արևելյան հաճարենուն և վրացական կաղնուն, բայց դա պարզապես սխալ է, ատլասի հեղինակների անուշադրության արդյունքը:

Արաքսյան կաղնու տերևները մանր են, 4—10 սմ երկարությամբ և 2—5 սմ լայնությամբ, համարյա զուրկ կաղնիներին բնորոշ լավ արտահայտված բլթակներից:

Հանդիպում է միայն Մեղրու շրջանում և Զանգեզուրի լեռնազանգվածների հարավային մասերում: Արաքսյան կաղնին ևս այն տեսակների թվին է պատկանում, որոնք տարածված են միայն Հայկական ՍՍՀ-ում, և եթե մենք չպահպանենք այս արժեքավոր ծառատեսակը, ապա այն իսպառ կվերանա աշխարհի երեսից:

Ի տարբերություն մնացած կաղնիների, արաքսյան կաղնին բավականին ջերմասեր է և չորադիմացկուն: Սովորաբար հանդիպում է ծովի մակերևույթից 500-ից մինչև 1100 մետր բարձրության վրա, չոր, քարքարոտ լանջերում: Լավ է աճում



## ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆ, ՉԵՆՔ ՈՒԶՈՒՄ

ԱՄՆ-ի կապի մինիստրությունում սենսացիոն լուր տարածվեց: Հայտնի էր դարձել, որ Կալիֆորնիայի Կարմել փոքրիկ քաղաքում նամակներն երբեք հասցեատերերի տները չեն հասցվում: «Սովորական անկարգություն է»,—որոշեցին մինիստրությունում, և Կարմել ուղարկվեց հատուկ հանձնաժողով, որպեսզի վերականգնի խախտված օրենքը: Սակայն քաղաքի բնակչությունը (մոտ 5 հազար մարդ) կտրականապես հրաժարվեց մոդեռնիզացիայից: «Մենք գիտակցաբար չենք ուզում, որ մեր նամակները տուն բերեն,— ասացին նրանք հանձնաժողովին,— մենք բոլորովին չենք ծուլանում նամակների համար փոստ գնալ, ուր, ի միջի այլոց, միաժամանակ փոստի աշխատողների հետ շաղակրատում ենք դեսից-դենից:

Նաև պարզվեց, որ Կարմելը բավականին «հնաոճ» քաղաք է: Այն հավակնում է լինել ԱՄՆ-ի միակ քաղաքը, ուր չկան գործարաններ, ֆաբրիկաներ, ապառիկ



ապրանքների խանութներ, ավտոմեքենաների վճարովի կանգառներ, նեոնային լամպեր և այլն, և այլն, և այլն:

«Մենք ծանոթ ենք ձեր այսպես կոչված «քաղաքակրթությանը»,— հայտարարեցին քաղաքի բնակիչները՝ լի մինչև վերջ նույն ոգով շարունակելու վճռականությամբ:

## ԱՊԱԳԱՅԻ ՔԱՂԱՔԸ

Եթե ուզում եք իմանալ, թե ապագայի քաղաքը ինչպիսին է պատկերացնում ճարտարապետ Կ. Տանգեն, այցելեք Տոկիոյից 50 կմ հեռավորության վրա գտնվող Տամա փոքրիկ քաղաքը: Այստեղ ընկլավել է մի յուրօրինակ փորձարկում, որի արդյունքը հայտնի կդառնա 1979 թվականին: Քաղաքի հեռուստակենտրոնը անընդմեջ կապ է հաստատել 300 ընտանիքների հետ, որոնց համար հաղորդում է Տոկիոյի հեռուստատեսության յոթ ծրագրեր, լրագրերի տեսապատկերներ, նորություններ, հայտարարություններ: Դասեր է տալիս, հաղորդում է տեղեկություններ սպորտի, եղանակի, վաճառվող ապրանքների և գների վերաբերյալ: Այդպիսին են Կ. Տանգեի հղացած քաղաքը իրականություն դարձնելու առաջին փորձի մասնակի արդյունքները: Կ. Տանգեի կարծիքով այդպիսի ապագա քաղաքներում ուսանողները առանց տնից դուրս գալու կկարողանան երկկողմանի հեռուստատեսային կապով առնչվել իրենց դասախոսների հետ: Տնային տնտեսուհիները կկարողանան առանց խոհանոցից դուրս գալու պատվիրել ցանկացած մթերքները ու ապրանքները: Քաղաքի կենտրոնական ԷՀՄ-ն մեխանիկորեն կհաշվի օգտագործված էլեկտրաէներգիան, ջուրը և գազը:

նույնիսկ աղակալած հողերում:

Վերջին տարիներին Զանգեզուրի արաքսյան կաղնու տնկարկները անուշադրության և վատ պահպանության հետևանքով խիստ նոսրացել են, տեղ-տեղ էլ՝ ոչնչացել: Սերմնային ծագում ունեցող ծառերը հատելու հետևանքով գերիշխում են մացառային ծագում ունեցողները, որոնք ողղակի թփանման են, 2—3 մետր բարձրությամբ:

Մեղրու և Ղափանի շրջանների դպրոցականները մեծ ջանասիրությամբ պետք է պահպանեն այս արժեքավոր ու անհետացող ծառատեսակը: Անհրաժեշտ է ստեղծել դպրոցական անտառպետություններ, պայքարել ծառերի հատումների դեմ, նպաստել դրանց սերմնային վերաճին, հավաքել արաքսյան կաղնու սերմերը և ցանել այն անտառամասերում, որտեղ այդ ծառատեսակը իսպառ ոչնչացել է:

Արաքսյան կաղնի կարելի է աճեցնել նաև դպրոցամերձ հողամասերում, որպեսզի աշակերտները լավ ճանաչեն այդ արժեքավոր ծառատեսակը և ամեն կերպ նպաստեն դրա պահպանմանը:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*



Հնարավոր կլինի վերջին լուրեր, եղանակային տեսություններ լսել և բժշկական կոնսուլտացիաներ ստանալ հեռուստատեսությամբ: Գիտնականները կկարողանան իրենց հետաքրքրող գիտական ինֆորմացիան ստանալ կենտրոնացված պահեստարաններից, իսկ գրքերն ու ամսագրերը՝ հանրային տեսագրադարաններից: Ոստիկաններն ու հրշեջները կկարողանան իրենց ծառայության վայրերից հետևել գողերին, կողոպտիչներին և հրդեհի օջախներին: Եվ ի վերջո, տեխնիկայի խոշորագույն և ապշեցուցիչ նվաճումը. ընտրողներն իրենց տանը, աթոռին նստած, պարզապես մի կոճակ սեղմելով կկարողանան մասնակցել... ընտրություններին: Միայն անհասկանալի է, թե ինչպե՞ս են քաղաքի բնակիչները վատնելու այդ մեքենայացված կյանքի համար վճարվելիք դրամը:

*Թարգմ. Հ. ՀԱԿՈԲՅԱՆԻ*


Լույս է տեսնում 1928 թվականից



ՊԻՈՆԵՐ **1. 1978 Թ.**

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



*Շապիկի առաջին էջը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*




«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—83, 56—14—96:

ՎՖ 04153: Պատվեր 2247: Տպաքանակ 52268: Տպ. 3 մամ.: Հանձնված է տպագրության 27 XII 1977 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:



ԵՂԻԱԶԱՐՅԱՆ ՀԱՍՄԻԿ, 11 տ., գ. Արզական



ՍԱՐԳՍՅԱՆ ՆԱՐԻՆԵ, 12 տ., Էջմիածնի շրջ., 3-րդ սովխոզ

ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ ՍՐԲՈՒՀԻ, 8 տ., Երևան



ՄԱՐԳԱՐՅԱՆ ՀՐԱՅՐ, 13 տ., գ. Արզական

